հիմնադրութեան երեսնամեակը :

9ին Ալժերիա կը հասնի Զօր. տը Կոլ : Օռանի եւ Ալժէի մէջ Ֆրանսական Ալժերիոյ կողմնակիցները ընդհանուր գործադուլ կը հրահանգեն եւ ցոյցեր կը կատարեն : : Միջադէպեր կը պատահին նաեւ Մահմետականներու եւ Եւրոպացիներու միջեւ, որոնց հետեւանքով 118 հոգի կը մեռնին (վեցը Եւրոպացի) եւ աւելի քան հինգ հարիւր հոգի կը վիրաւորուին :

15ին Պելժիոյ Թագաւորը կ'ամուսնանայ :

17ին Կարդինալ Աղաճանեան Փարիզ կը հասնի :

18ին Կարդինալ Աղաճանեան եպիսկոպոսական ձեռնադրութիւնը եւ օծումը կը կատարէ Ամատունի Ծ. Վրդ.ի, որ Պապին կողմէ Առաքելական Թեմակալ նշանակուած է Ֆրանսայի Հայոց :

20ին Զօր. տըԿոլ ճառ մը խօսեցաւ բացատրելով թէ ինչու այո պէտք է պատասխանել Յունուար 8ի հանրաքուէին :

27ին, Ֆրանսա կը պայթեցնէ իր Գ. հիւլէական ռումբը :

×

1960ին մեռան՝ Ալպեր Քամիւ (Ֆրանսացի ծանօթ գրագէտ եւ Նոպէլեան մրցանակաւոր), Կարդինալ Սթեփինաք, Պորիս Փասթերնաք (Խորհրդային գրագէտը, Նոպէլեան մրցանակաւոր), Ժիւլ Սիւփերվիէլ (Ֆրանսացի գրագէտ), Անայրըն Պիվըն, Անգլիոյ աշխատաւորական կուսակցութեան պարագլուխը, Իշխան Ալի Խան եւ Մօրիս տը Պրօյ :

## ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

ՄԱՐՍԷՅԼ Վասպուրականի Հայր. Միութեան Կեդր. վարչութիւնը Նոր Տարուան առթիւ իր ջերմ շնորհաւորութիւնները կը ներկայացնէ Ֆրանսայի եւ արտասահմանի բոլոր հայրենակիցներուն, երկար եւ երջանիկ կեանքի մաղթանքներով :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Պ. Ժիրայր Պառաւեան այս տարի եւս մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր անէրհօրը՝ Պ. Ա. Համբարձումեանի (Տէսին : Օրիորդ Քրիստինէ Զէյթունցեան այս տարի եւս մէկ տարեկան «Յառաջ»կը նուիրէ իր հօրը՝ Զաքար Զէյթունցեանցի (Տէսին) :

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ԹԷՅԱՍԱՐ ՄԸ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս. Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ, Փարիզ :

Մուտքը ազատ է :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այրի Տիկին Արշակ Ջամալեան, զաւակները՝ Տէր եւ Տիկին Արմիկ Ջամալեան, Տիկին Լոնա Ջամալեան, Թոռները՝ Սեդա եւ Իվելիթա կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝ հանրային վաստակաւոր գործիչ

ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ

յիշատակին, անոր մահուան քառասունքին Կիրակի (Յունուար 8) առաւօտեան ժամը 11ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պուլվ. Օտտոյի Կապոյտ Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» կը տօնէ Յունուար 8, Կիրակի օր :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ընկերներ Պետրոս եւ Յովիկ Եղիազարեան, իրենց հօրաքրոջ՝

ԳՈՀԱՐ ԵՂԻԱԶԱՐԵԱՆԻ

մահուան հինգերորդ տարելիցին առթիւ՝ 200 Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան :

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Անիէռ - Պուա Քոլոմպի մասնաճիւղին թէյասեղանը Կիրակի (8 Յունուար) կէսօրէ վերջ ժամը 15էն 21, Սանթրը Ատմինիսթրաթիֆ է Սօսիալի թիւ 3 սրահին մէջ (Անիէռի քաղաքապետարան) : Մուտքը ազատ է :



ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՅԳԱՀԱՆԴԷՍ ԴԷՊԻ ՇԱՌ ՊՕՆԻԷՌ, ԵՂԱՆԱԿԻ ՓԱՅԼՈՒՆ

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Շառպօնիէռի Կռան Սէրքլը շքեղ սրահներուն մէջ
Ի ՆՊԱՍՏ ԼԻՈՆԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ
Նախաձեռնութեամբ Լիոնի Եկեղեցաշէն շինարար յանձնախումբի
Յունուար 8, Կիրակի օր ժամը 17էն մինչեւ լոյս
Հայկական եւ միջազգային աքռաքսիոններ
Մասնակցութեամբ

GEO MOUQUET ET JACKY MALLEREY
(Շառպօնիէռի երկու նուագախումբերու)

Գեղարուեստական բաժին, կը մասնակցին Ռատիօ - թէլէվիզիոնի երգչուհի
Օր. Ժ. ՏԻՐԱՏՈՒՐԵԱՆ (Փարիզէն), Օր. Մ. ՍԻՄՈՆԵԱՆ (Մարսէյլ),
Օր. Ա. ՄԱՐԳԱՐԵԱՆ եւ Պ. Ա. ՍԻՐԱՆՈՍԵԱՆ
(Լիոնի Օփերայէն եւ քոնսէրվաթուառէն)

Պիւֆէ, «անգլիական ափսէ» եւ հայկական առատ համադամ ուտելիքներ :

## 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1 ԷՆ

Յառաջի բաժանորդագրութեան նոր պայմաններն են .—

ՖՐԱՆՍԱ

| | | |
|---|---|---|
| Տարեկան բաժնեգին՝ | Ն · Ֆ · | 50 |
| Վեցամսեայ | Ն · Ֆ · | 27 |
| Եռամսայ | Ն · Ֆ · | 15 |
| Հատը՝ | Ն · Ֆ · | 0,25 |

ԱՐՏԱՍԱՀՄԱՆ

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան | 12 տոլար | Ն · Ֆ · | 60 |
| Վեցամսեայ | 7 տոլար | Ն · Ֆ · | 35 |

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

### ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այրի Տիկին Արշակ Ջամալեան, զաւակները՝ Տէր եւ Տիկին Արմիկ Ջամալեան, Տիկին Էռնա Ջամալեան, թոռները՝ Սեդա եւ Իվելիթա կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝ հանրային վաստակաւոր գործիչ՝

ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ

յիշատակին, անոր մահուան քառասունքին առթիւ :

Կիրակի (Յունուար 8) առաւօտեան ժամը 11ին, Փարիզի Ս · Յովհ · Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պուլվ · Օտոյի Կապոյտ Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» կը տօնէ Յունուար 8, Կիրակի օր :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Եկեղեցւոյ դիւանը ստացած է շնորհակալութեամբ հետեւեալ նուիրատուութիւնները իր կրթական ձեռնարկներուն համար :

Պ · Ա · Հարենց 25 Ն · Ֆ · Նոր Տարւոյ առթիւ : Պ · Մ · Փամպուքճեան 30 Ն · Ֆ · ի պաստ Պէլվիլ-Լիլայի դպրոցին, Տիկին Եղիսաբէթ Դարբինեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի : Դ · Յովհաննէսեան եւ Դ · Ճիզմէճեան ընտանիքները 50 Ն · Ֆ ·, Տիկին Տէր Ստեփանեանի եւ Տիկ · Մարի Էտիրնէլեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի :

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Անիէռ - Պուա Քոլոմպի մասնաճիւղին թէյասեղանը Կիրակի (8 Յունուար) կէսօրէ վերջ ժամը 15էն 21, Սանթրը Ատմինիսթրաթիֆ է Սօսիալի թիւ 3 սրահին մէջ (Անիէռի քաղաքապետարան) : Մուտքը ազատ է :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի, հանդիսաւորութիւն Յիսուսի Յայտնութեան եւ Մկրտութեան :

Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ եւ Ջրօրհնէք ժամը 10·30ին :

ԿԻՐԱԿԻ 15 Յունուար, ճիշդ ժամը 10-ին հանդիսաւոր պատարագ եւ Արհիապատիւ Կարապետ Գերպ · Ամատունիի Եպիսկոպոսական իշխանութեան տուչութեան հանդիսաւորութիւն՝ քահանայապետական ուիրակ Գերպ · Փօլ Պերթոլլիի ձեռքով :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այդ պաշտօնական արարողութեան :

### ԱԶԴ

Սէն ժերոմի Թաղ · Խորհուրդս առ ի գիտութիւն կը ծանուցանէ եւ լուրջ ուշադրութեան կը յանձնէ Թաղիս եկեղեցւոյ ենթակայ — Նօթր Տամ Գոնսոլասիօն, Սէն Միթր, Սարթան, Լառօզ, Ծեռլան, Գուռա - Ռուժ, Պուտօնիէռ, Ալօ, Մարթէկօ թաղամասերու հայրենակիցներուն թէ՝ Ս · Ծնունդի օրուան օրհնէնքի առիթով ձեզ պիտի այցելէ Թաղիս մնայուն հոգեւոր հովիւ Արժանապատիւ Տէր Եղիշէ Խաչակիր քհնյ · Փանոսեան :

Կը խնդրուի վերոյիշեալ թաղամասերու հայրենակիցներէն՝ ի մասնաւորի նկատի ունենալ սոյն պարագան :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Յակոբ Կօշկակարեան 100 Ն · Ֆ · կը նուիրեն Մշակոյթի Տան իրենց այցելութեան առթիւ :

### Ս · ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

5 Յունուար, Հինգշաբթի, Ճրագալոյց Ս · Ծննդեան : Սկիզբ ժամերգութեան ժամը 3·30ին : Ս · պատարագ ժամը 5ին :

6 Յունուար, Ուրբաթ, Տօն Ս · Ծննդեան եւ Աստուածայայտնութեան : Սկիզբ ժամերգութեան ժամը ութին : Ս · պատարագ ժամը 10ին : Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Գերաշնորհ Տէր Սերովբէ Եպիսկ · Մանուկեան, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն :

7 Յունուար, Շաբաթ, Մեռելոց : Ս · պատարագ ժամը 10ին :

8 Յունուար, Կիրակի, Ս · պատարագ, ժամը 10ին :

×

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

6 Յունուար, Ուրբաթ Ս · Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն ժամը 8·30ին :

Ս · Հաղորդութիւն մանուկներու : (Ծնողքները կը հրաւիրուին առաջնորդել իրենց զաւակները) :

7 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, երեկոյեան ժամերգութիւն եւ Ս · պատարագ ժամը 4·45ին :

8 Յունուար, Կիրակի, Յիշատակ Մեռելոց եւ Ջրօրհնէք :

×

### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Հինգշաբթի, Ճրագալոյց, ժամերգութիւն եւ պատարագ ժամը 15·30ին :

Ուրբաթ, Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն, ժամը 8·30ին : Կը պատարագէ եւ կը քարոզէ Օշին աբեղայ Նիկոլեան :

×

### ԱՌՆՈՒՎԻԼԻ ՎԱՐԱԳԱՅ Ս · ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս Շաբաթ երեկոյեան ժամը 18-ին Ճրագալոյց :

Կիրակի առաւօտ ժամը 9·30ին պատարագ, Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն :

Այս Կիրակի ժամերգութիւն, Ջրօրհնէք եւ յիշատակ մեռելոց :

Կը պատարագէ եւ կը քարոզէ Դրդրեան վարդապետ :

×

### ԾՆՈՒՆԴԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Ըստ Կրօն · ժողովի որոշման, յառաջիկայ Կիրակի Նոր Տարւոյ արարողութիւնք կը սկսին ժամը 8·30ին, պատարագ ժամը 10·30ին :

Յունուար 7, Շաբաթ երեկոյ Ճրագալոյցի արարողութիւն, ժամը 4 :

Յունուար 8 Կիր .—Տօն Ծննդեան սկիզբ ժամերգութեանց ժամը 8 : Ս · պատարագ ժամը 10, հանդիսաւոր Ջրօրհնէք ժամը 11·45 :

Յունուար 9 Երկուշաբթի .— Մեռելոց, սկիզբ ժամերգութեան 8·30, պատարագ՝ ժամը 10, հոգեհանգիստ ընդհ · մեռեալներու Հայոց ժամը 11·30 :

×

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ՇԱԲԱԹ, երեկոյ .— Ճրագալոյց, սկզբնաւորութիւն ժամերգութեանց ժամը 4·30ին :

ԿԻՐԱԿԻ .— Ս · Ծնունդ, սկզբնաւորութիւն ժամերգութեանց ժամը 7·30ին :

Պատարագ ժամը 10ին :

Ջրօրհնէք ժամը 11·30ին :

Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջաններու հաւատացեալ հայ ժողովուրդը ներկայ ըլլալու հոգեպարար արարողութեանց : Այս տարի Լիոնի եկեղեցւոյ արարողութեանց բացառիկ փայլ մը պիտի տայ, Պէյրութէն ժամանած Լիոնի եկեղեցւոյ նոր դպրապետ Պ · Մովսէս Զափարեան :

Այս առթիւ մասնաւորաբար կը խնդրուի հաւատացեալ ժողովուրդէն տօնական օրերուն, բերել իրենց իւղագիններ, վառ պահելու համար մեր Ս · Եկեղեցին :

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ շինութեան .—

Հանգուցեալ Յակոբ Սօֆեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ անձերը նուիրած են .—

Պ · Պ · Յակոբ Ռուբինեան, Միհրան Սէփէթճեան, Թորոս Զօպանեան, Յակոբ Մանուէլեան տասնական Ն · Ֆ · :

### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Լիոնի Հ · Յ · Դ · Նոր Սերունդի հայերէնի դասերը վերսկսած են եւ կանոնաւորապէս տեղի կ'ունենան ամէն Հինգշաբթի երեկոյ ժամը 8·30 - 10 նորակառոյց ազգային տան մէջ, կարող եւ մասնագէտ ուսուցիչի մը ղեկավարութեամբ : Կը հրաւիրուի երկսեռ երիտասարդութիւնը, օգտուիլ այս բացառիկ պատեհութենէն :

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ

### ԱՌԹԻՒ ԹԷՅԱՍԱՐ ՄԸ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս · Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ, Փարիզ :

Մուտքը ազատ է :

## ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

ԼԻՈՆ .— Տէր եւ Տիկին Վարդավառ Գամպերեան մէկ տարեկան Յառաջ կը նուիրեն իրենց հօր՝ ընկեր Խողեանի, (Սէն Եժրոմ, Մարսէյլ) :

## Հ. Յ. Դ.

ՆԻՍ .— Հ. Յ. Դ. «Գէորգ Չաւուշ» խումբը ընկեր. ընդհ. ժողովի կը հրաւիրէ այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

Այս ժողովին ներկայ պիտի ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Վրէժ Միլոյեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ յետ պատարագի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց հօր՝

ԳԱՍՊԱՐ ՄԻԼՈՅԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պուլվ. Օտտոյի Կապոյտ Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» կը տօնէ Յունուար 8, Կիրակի օր :

## ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Լիոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի հայերէնի դասերը վերսկսած են եւ կանոնաւորապէս տեղի կ'ունենան ամէն Հինգշաբթի երեկոյ ժամը 8·30 – 10 նորակառոյց ազգային տան մէջ, կարող եւ մասնագէտ ուսուցիչի մը ղեկավարութեամբ : Կը հրաւիրուի երկսեռ երիտասարդութիւնը, օգտուիլ այս բացառիկ պատեհութենէն :

## ԾՆՈՒՆԴԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Ըստ Կրօն. ժողովի որոշման, յառաջիկայ Կիրակի Նոր Տարւոյ արարողութիւնք կը սկսին ժամը 8·30ին, պատարագ ժամը 10·30ին :

Յունուար 7, Շաբաթ երեկոյ Ճրագալոյցի արարողութիւն, ժամը 4 :

Յունուար 8 Կիր.—Տօն Ծննդեան սկիզբ ժամերգութեանց ժամը 8 : Ս. պատարագ ժամը 10, հանդիսաւոր Ջրօրհնէք ժամը 11·45 :

Յունուար 9 Երկուշաբթի.— Մեռելոց, սկիզբ ժամերգութեան 8·30, պատարագ՝ ժամը 10, հոգեհանգիստ ընդհ. մեռելներու Հայոց ժամը 11·30 :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի, հանդիսաւորութիւն Յիսուսի Յայտնութեան եւ Մկրտութեան :

Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ եւ Ջրօրհնէք ժամը 10·30ին :

ԿԻՐԱԿԻ 15 Յունուար, ճիշդ ժամը 10-ին հանդիսաւոր պատարագ եւ Արհիապատիւ Կարապետ Գերպ. Ամատունիի Եպիսկոպոսական իշխանութեան տաւչութեան հանդիսաւորութիւն՝ քահանայապետական ուխրակ Գերպ. Փոլ Պերթոլիի ձեռքով :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այդ պաշտօնական արարողութեան :

## ԴԵՐԱՍԱՆ ԹՐԱԳՕՇԻ

ՆՈՐ ՍԱԼԵՐԸ (Միքրօսիյօն)

Թիւ 1 եւ թիւ 2 բոլորովին նոր երգեր

9 երգերով եւ 4 նուագով (կէս ժամ տեւողութեամբ իւրաքանչիւրը) :

Բոլոր երգերը տպագրուած կը գտնէք պահարանին մէջ :

Փարիզի մէջ կարելի է գտնել միայն Հ. Բալուեանի մօտ, 43 Րիւ Րիշէ, (փարիզ 9) :

Մատչելի գիներով 10 Ն. Ֆ. միայն տօներու առթիւ :

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Նախընտրաբար այր եւ կին մը կամ կին մը հաստատութեան մը մէջ իբրեւ խոհարար կամ հանդերձատան աշխատանքներու համար :

Դիմել՝ Հայ Ընծայարան :

3, Ave. Grandchamp, LE PECQ

TEL. 963.0172

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

5 Յունուար, Հինգշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան: Սկիզբ ժամերգութեան ժամը 3·30ին : Ս. պատարագ ժամը 5ին :

6 Յունուար, Ուրբաթ, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան : Սկիզբ ժամերգութեան ժամը ութին : Ս. պատարագ ժամը 10ին : Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Գերաշնորհ Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն :

7 Յունուար, Շաբաթ, Մեռելոց : Ս. պատարագ ժամը 10ին :

8 Յունուար, Կիրակի, Ս. պատարագ, ժամը 10ին :

×

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

6 Յունուար, Ուրբաթ Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն ժամը 8·30ին :

Ս. Հաղորդութիւն մանուկներու : (Ծնողքները կը հրաւիրուին առաջնորդել իրենց զաւակները) :

7 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, երեկոյեան ժամերգութիւն եւ Ս. պատարագ ժամը 4·45ին :

8 Յունուար, Կիրակի, Յիշատակ Մեռելոց եւ Ջրօրհնէք :

×

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Հինգշաբթի, Ճրագալոյց, ժամերգութիւն եւ պատարագ ժամը 15·30ին :

Ուրբաթ, Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն, ժամը 8·30ին : Կը պատարագէ եւ կը քարոզէ Օշին աբեղայ Նիկոլեան :

×

## ԱՌՆՈՒՎԻԼԻ ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս Շաբաթ երեկոյեան ժամը 18-ին Ճրագալոյց :

Կիրակի առաւօտ ժամը 9·30ին պատարագ, Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն :

Այս Կիրակի ժամերգութիւն, Ջրօրհնէք եւ յիշատակ մեռելոց :

Կը պատարագէ եւ կը քարոզէ Դրդրեան վարդապետ :

×

## ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ՇԱԲԱԹ, երեկոյ .— Ճրագալոյց, սկզբնաւորութիւն ժամերգութեանց ժամը 4·30ին :

ԿԻՐԱԿԻ .— Ս. Ծնունդ, սկզբնաւորութիւն ժամերգութեանց ժամը 7·30ին :

Պատարագ ժամը 10ին :

Ջրօրհնէք ժամը 11·30ին :

Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջաններու հաւատացեալ հայ ժողովուրդը ներկայ ըլլալու հոգեպարար արարողութեանց : Այս տարի Լիոնի եկեղեցւոյ արարողութեանց բացառիկ փայլ մը պիտի տայ, Պէյրութէն ժամանած Լիոնի եկեղեցւոյ նոր դպրապետ Պ. Մովսէս Զափարեան :

Այս առթիւ մասնաւորաբար կը խնդրուի հաւատացեալ ժողովուրդէն տօնական օրերուն, բերել իրենց իւղագինները, վառ պահելու համար մեր Ս. Եկեղեցին :

×

## ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ Տէսինահայ յարգոյ հասարակութեան որ, տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի Ամանորի եւ Ս. Ծննդեան տօներու առթիւ պաշտամունք հետեւեալ ժամերգութեամբ :

Պատարագիչ տեղւոյս հոգեւոր հովիւ Տ. Վարագ Քհնյ. Աւագեան :

Շաբաթ, Ծննդի ժամերգութիւն, կէսօրէ ետք ժամը 15ին, գիրքերու ընթերցում, Ճրագալոյցի Ս. պատարագ ժամը 16·30ին :

ԿԻՐԱԿԻ, ժամերգութեան առաւօտեան ժամը 8·30ին, Ս. պատարագ (մասնակց. նորակազմ երգչախումբի) ժամը 10ին : Քարոզ Ս. Ծննդեան առթիւ ժամը 11ին : Յաւարտ Ս. պատարագի Ջրօրհնէքի եւ Խաչահանգիստի արարողութիւն :

ՄԱՍՆԱԳԷՏ – ԵՐԴՈՒԵԱԼ ԹԱՐԳՄԱՆ

## ՊԵՏՐՈՍ ՋԱՄԱՐԵԱՆԻ

Նոր հասցէն է՝

25, Boulevard Eugène Pierre. Marseille (5e)

Tél. : 42-08.99

Ընդունելութիւն՝ միայն ժամադրութեամբ :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ԹԷՅԱՍԻՐ ՄԸ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս. Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ, Փարիզ :

Մուտքը ազատ է :

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Անիէռ – Պուա Քոլոմպի մասնաճիւղին թէյասեղանը Կիրակի (8 Յունուար) կէսօրէ վերջ ժամը 15էն 21, Սանթրը Ատմինիսթրաթիֆ է Սօսիալի թիւ 3 սրահին մէջ (Անիէռի քաղաքապետարան) : Մուտքը ազատ է :

## 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1 ԷՆ

Յառաջի բաժանորդագրութեան նոր պայմաններն են .—

ՖՐԱՆՍԱ

| | | |
|---|---|---|
| Տարեկան բաժնեգին՝ | Ն. Ֆ. | 50 |
| Վեցամսեայ | Ն. Ֆ. | 27 |
| Եռամսայ | Ն. Ֆ. | 15 |
| Հատը՝ | Ն. Ֆ. | 0,25 |

ԱՐՏԱՍԱՀՄԱՆ

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան | 12 տոլար | Ն. Ֆ. | 60 |
| Վեցամսեայ | 7 տոլար | Ն. Ֆ. | 35 |

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Քլերմոն Ֆերանէն Փափազեան ընտանիքը հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ : (Ստանալ «Յառաջ»էն) :*

## 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1 ԷՆ

*Յառաջի բաժանորդագրութեան նոր պայմաններն են .—*

*ՖՐԱՆՍԱ*

| | | |
|---|---|---|
| Տարեկան բաժնեգին՝ | Ն. Ֆ. | 50 |
| Վեցամսեայ | Ն. Ֆ. | 27 |
| Եռամսայ | Ն. Ֆ. | 15 |
| Հատը՝ | Ն. Ֆ. | 0,25 |

*ԱՐՏԱՍԱՀՄԱՆ*

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան | 12 տոլար | Ն. Ֆ. | 60 |
| Վեցամսեայ | 7 տոլար | Ն. Ֆ. | 35 |

*Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը :*

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

*Տէր եւ Տիկին Անդրանիկ Քիւրտօղլեան իրենց աչքինեկ զաւկին՝ Ալէնի ծննդեան առթիւ (27 Դեկտ.), հետեւեալ նուիրատուութիւնները կ'ընեն .—*

50 Ն. Ֆ. Ֆ. Կ. Խաչի մանուկներու օգափոխութեան կայանին :

50 Ն. Ֆ. «Հայ-Բոյժ»ի բարգաւաճման :

50 Ն. Ֆ. Շ. Նարդունիի նոր հրատարակութեան համար, — Լուսեղէն Շիրիմներ, մէկ-մէկ օրինակ ղրկուելու համար Հալէպի Հայկազեան վարժարանին, Պէյրութի Ս. Նշան վարժարանին, Թեհրանի «Արարատ» Մշակութային ակումբին, Մոնմորանսիի Տեբրանոցին, Ռէնսիի Դպրոցասէր Տիկնանց վարժարանին :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

*Պուլվ. Օտտոյի Կապոյտ Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» կը տօնէ Յունուար 8, Կիրակի օր :*

### ՎԱԼԱՆՍԻ ՀԱՅ ԱԶԳ. ՄԻՈՒԹԻՒՆԸ
#### եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը

*Կը յայտարարեն եւ սիրով կը հրաւիրեն բոլոր շրջաններու Հայութիւնը, ներկայ գտնուելու Վալանսի նորընծայ*

*ՏԷՐ ՆԱՐԵԿ ՔՀՆՑ. ՎԱՐԴԱՆԵԱՆԻ*

*անդրանիկ պատարագին, որ պիտի մատուցուի այս Կիրակի, Ծնունդի առթիւ :*

### ԾՆՈՒՆԴԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

*Յունուար 9 Երկուշաբթի .— Մեռելոց, սկիզբ ժամերգութեան 8.30, պատարագ՝ ժամը 10, հոգեհանգիստ ընդհ. մեռեալներու Հայոց ժամը 11.30 :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ
### ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

*Այրի Տիկին Արշակ Ջամալեան, զաւակները՝ Տէր եւ Տիկին Արմիկ Ջամալեան, Տիկին Էռնա Ջամալեան, թոռները՝ Սեդա եւ Իվելիթա կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝ հանրային վաստակաւոր գործիչ՝*

*ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ*

*յիշատակին, անոր մահուան քառասնամեակին առթիւ :*

*Կիրակի (Յունուար 8) առաւօտեան ժամը 11ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ
### ԱՌԹԻՒ ԹԷՅԱՍԻԱՐ ՄԸ

*Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս. Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ, Փարիզ :*

*Մուտքը ազատ է :*

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Կապոյտ Խաչի Անիէռ - Պուա Քոլոմպի մասնաճիւղին թէյասեղանը Կիրակի (8 Յունուար) կէսօրէ վերջ ժամը 15էն 21,* Սանթրը Ատմինիսթրաթիֆ է Սօսիալի *թիւ 3 սրահին մէջ (Անիէռի քաղաքապետարան) : Մուտքը ազատ է :*

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

ԿԻՐԱԿԻ 15 *Յունուար, ճիշդ ժամը 10-ին հանդիսաւոր պատարագ եւ Արհիապատիւ Կարապետ Գերպ. Ամատունիի Եպիսկոպոսական իշխանութեան տուչութեան հանդիսաւորութիւն՝ քահանայապետական ուղիղ Գերպ. Փօլ Պերթոլլիի ձեռքով :*

*Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այդ պաշտօնական արարողութեան :*

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Նախընտրաբար այր եւ կին մը կամ կին մը հաստատութեան մը մէջ իբրեւ խոհարար կամ հանդերձատան աշխատանքներու համար :*

*Դիմել՝ Հայ Ընծայարան :*

3, Ave. Grandchamp, LE PECQ

TEL. 963.0172

Imprimerie Spéciale du journal « Haratch »

*ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է —*

## ԼՈՒՍԵՂԷՆ ՇԻՐԻՄՆԵՐ
### Գրեց՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*Գրական դիմաստուերներ, պատկերազարդ : 176 էջ :*

Գին 10 Ն. Ֆ. (1000 հին ֆր.)

*Ծամբու ծախքի համար՝ 1 Ն. Ֆ. աւելի (100 հին ֆրանքով) :*

*Դիմել՝ ՅԱՌԱՋի :*

## Հ. Յ. Դ.

*ՆԻՍ .— Հ. Յ. Դ. «Գէորգ Չաւուշ» խումբը ընկեր. ընդհ. ժողովի կը հրաւիրուի այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :*

*Այս ժողովին ներկայ պիտի ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :*

բան ընտրեմ ։ Որպէսզի կարենամ լաւ տանիլ այդ ճամբան, աղդային անդամակցութիւն մը պէտք է ինծի, այլ խօսքով, մեծամասնութիւն մը որ համապատասխան ըլլայ խնդրին ։ Բայց, նաեւ, պէտք ունիմ, այո՛ պէտք ունիմ գիտնալու թէ ի՛նչ է մտքերու եւ սրտերու հողերանութիւնը ։ Ատոր համար դէպի ձեզի կը դառնամ, բոլոր միջնորդներու վրայէն ։ Իրականին մէջ — ով չի գիտեր — խընդիրը ամէն մէկուդ եւ իմ միջեւ է ։

« Ֆրանսուհիներ, Ֆրանսացիներ, ամէն ինչ պարզ է եւ յստակ ։ Ֆրանսայի համար, միաբերան այո մը կ'ուզեմ ։ Կեցցէ՛ Հանրապետութիւնը, կեցցէ՛ Ֆրանսան » ։

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՆՈՒԹԵԱՆՑ ՕՏԱՐ ԱՐԵՒԵԼԱԳԷՏՆԵՐՈՒ ՀԵՏ

*ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ*

### ՏԻԿԻՆ ԱՐՇԱԼՈՅՍ ԽԱՆՏԱՆԵԱՆԻ

(ԼՈՒՍԱՒՈՐ ՊԱՏԿԵՐՆԵՐՈՎ)

Կազմակերպուած Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնաժողովին կողմէ ։

14 Յունուար, Շաբաթ կէս օրէ վերջ, ժամը 17ին, Հ. Բ. Ը. Միութեան սրահին մէջ,

11, Square Alboni, Paris (16e)

Métro Passy

Հասարակութիւնը սիրով կը հրաւիրուի ։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կը տօնուի մեծ պատրաստութեամբ, Յունուար 15ին, Կիրակի ժամը 15·30ին, Թիւ Ժէի սրահին մէջ ։

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին ։ Դպրոցի աշակերտութեան կողմէ կը ներկայացուի ։

1·— Յիսուսի Ծնունդը՝ կենդանի պատկեր, նոր երգերով ։

2·— Ծաղիկներու մենախօսութիւնը՝ երգախառն սիրուն պատկեր (մէկ արար) ։

3·— Կաղանդ պապան կուգայ (տրամախօսութիւն, մէկ արար) ։

Խմբերգ, երգ եւ արտասանութիւն ։ Կաղանդ պապայէն նուէր պիտի ստանան սրահին մէջ ներկայ եղող բոլոր պզտիկները ։

Սիրով կը հրաւիրուին, Վիզզօզի, Լանսէյլի եւ Թընաժի հայրենակիցները իրենց պզտիկներով ։

Նման դէպք մը պատահած է Քուլայի մէջ :

Ձերբակալուած են ցուցարարները, իբրեւ յեղաշրջումի թշնամի :

Դէպքը կը հաստատէ թէ, հակառակ վարկաբեկումի բոլոր փորձերուն, որոնք կը կատարուին դատավարութեան ընթացքին, տակաւին համակրանք կը վայելեն անկեալները երկրին մէջ :

## ԿՐԿՆՈՒԹԻՒՆ, ՀԱԿԱՍՈՒԹԻՒՆ ԵՒ ԿԱՏԱԿԵՐԳՈՒԹԻՒՆ

Թուրքիոյ Սահմանադիր Ժողովի բացման հրաւիրուած էին 82 հոգի մամլոյ ներկայացուցիչ, 637 հոգի ժողովրդեան ներկայացուցիչ, 84 հոգի դիւանագիտական մարմինէն, 300 հոգի զինուորական եւ վարչական աւագանիէն :

Բացման նիստին կը նախագահէր երիցագոյն անդամը Եուսուֆ Քեմալ Թենկիրշէնք, ութսուն տարեկան, որ վերջին պահուն ընտրուած ըլլալով՝ առաջ անցաւ Ինէօնիւէն, որու անունը կուտային Թուրք թերթերը, քիչ մը աճապարելով :

Որոշուեցաւ Յունուար Վեցը յայտարարել ազգային տօն, ի յիշատակ սահմանադիր ժողովի առաջին նիստին :

Գրուեցաւ թէ Սահմանադիր Ժողովին բացումէն ետքը՝ պիտի արտօնուի քաղաքական գործունէութիւնը : Հակառակ պաշտօնական յայտարարութեան՝ այժմ պաշտօնապէս կը հերքուի նման արտօնութիւն մը տալու որոշումը :

Այս հակասութիւններէն զատ, Եասը Ատայի դատավարութիւնները եւս, իրենց կարգին, շարունակական կրկնութիւններով՝ կորսնցուցած են իրենց հետաքրքրութիւնը : Օրուան իշխանութիւնը կը փորձէ վառ պահել հետաքրքրութիւնը, բայց կը չէզոքէ ժողովուրդին անտարբերութիւնը :

Այս առթիւ՝ հարկ կը համարինք ճշդել պարագայ մը.— Ժողովրդական կամ լրագրական հետաքրքրութիւն ներկայացնեն կամ ոչ, Թուրքիոյ Դէպքերուն պէտք է հետեւիլ շատ մօտէն, ամենայն մանրամասնութեամբ, — այդպէս կը պահանջէ Հայկական Դատը :

Յստակ է մեր խօսքը կամ տեսակէտը : Բացատրութեան կարօտ չէ, ոչ իսկ բառ մը աւելի :

Բառ մը աւելին կ'ըսուի ... խոշոր ականջներու մէջ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Պ. Մարտիրոս Յակոբեան կը նուիրէ յիսուն Ն. Ֆ. «Սողոմոն Թէհլիրեան» սրահին, փոխան ծաղկեպսակի, տարաբախտ Յակոբ Սօֆեանի մահուան առթիւ :

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՆՈՒԹԵԱՆՑ ՕՏԱՐ ԱՐԵՒԵԼԱԳԷՏՆԵՐՈՒ ՀԵՏ
*ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ*

### ՏԻԿԻՆ ԱՐՇԱԼՈՅՍ ԽԱՆՏԱՆԵԱՆԻ
(ԼՈՒՍԱՒՈՐ ՊԱՏԿԵՐՆԵՐՈՎ)

Կազմակերպուած Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնաժողովին կողմէ :

14 Յունուար, Շաբաթ կէսօրէ վերջ, ժամը 17ին, Հ. Բ. Ը. Միութեան սրահին մէջ,

11, Square Alboni, Paris (16e)

Métro Passy

Հասարակութիւնը սիրով կը հրաւիրուի :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Նախընտրաբար այր եւ կին մը կամ կին մը հաստատութեան մը մէջ իբրեւ խոհարար կամ հանդերձատան աշխատանքներու համար :

Դիմել՝ Հայ Ընծայարան :

3, Ave. Grandchamp, LE PECQ

TEL. 963.01 72

ՄԱՍՆԱԳԷՏ – ԵՐԴՈՒԵԱԼ ԹԱՐԳՄԱՆ

## ՊԵՏՐՈՍ ՋԱՄԱՐԵԱՆԻ

Նոր հասցէն է՝

25, Boulevard Eugène Pierre. Marseille (5e)

Tél. : 42-08.99

Ընդունելութիւն՝ միայն ժամադրութեամբ :

## 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1 ԷՆ

Յառաջի բաժանորդագրութեան նոր պայմաններն են.—

| | | |
|---|---|---|
| *ՖՐԱՆՍԱ* | | |
| Տարեկան բաժնեգին՝ | Ն. Ֆ. | 50 |
| Վեցամսեայ | Ն. Ֆ. | 27 |
| Եռամսայ | Ն. Ֆ. | 15 |
| Հատը՝ | Ն. Ֆ. | 0,25 |
| *ԱՐՏԱՍԱՀՄԱՆ* | | |
| Տարեկան 12 տոլար | Ն. Ֆ. | 60 |
| Վեցամսեայ 7 տոլար | Ն. Ֆ. | 35 |

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը :

Կը խօսի Արժանթինի «Նոր Կեանք» թերթին խմբագրապետ Պ. ԿԷՕՆՃԵԱՆ :

Նիւթ՝ «Սփիւռքը հետաքրքրող հարցեր» :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

ԿԻՐԱԿԻ 15 Յունուար, ճիշդ ժամը 10ին հանդիսաւոր պատարագ եւ Արհիապատիւ Կարապետ Գերպ. Ամատունիի Եպիսկոպոսական իշխանութեան տուչութեան հանդիսաւորութիւն՝ քահանայապետական նուիրակ Գերպ. Փօլ Պերթօլիի ձեռքով :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այդ պաշտօնական արարողութեան :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի մասնաճիւղին կողմէ, այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն 2 :

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

**Compagnons du Rythme**

ՊԻՒՖԷ :

ՅԱՌԱՋ.— Նամակատուփ.— Վայրը չէ ճշդուած ղրկուած յայտարարութեան մէջ :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ
ԱՊՐԻԼ 5ԻՆ

*ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ*

Իսիի Խրիմեան վարժարանի ամավերջի հանդէսը այս Կիրակի ժամը 16ին վարժարանին մէջ :

Գեղարուեստական խնամեալ բաժին, արտասանութիւններ, երգեր, նուագ եւն :

Աշակերտութեան կողմէ պիտի ներկայացուի մանկական թատերախաղ մը

« ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ՄՍՈՒՐ »

Իսիի գաղութէն եւ ծնողքներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ սոյն հանդէսին, քաջալերելու համար դպրոցին երկսեռ աշակերտութիւնը :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## Հ. Յ. Դ.

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին :

Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը :

Կը խնդրուի ընկերներէն ճշդապահ ըլլալ :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կը տօնուի մեծ պատրաստութեամբ, Յունուար 15ին, Կիրակի ժամը 15.30ին, Ռիւ Ժէի սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին : Դպրոցի աշակերտութեան կողմէ կը ներկայացուի :

1.—Յիսուսի Ծնունդը՝ կենդանի պատկեր, նոր երգերով :

2.— Ծաղիկներու մենախօսութիւնը՝ երգախառն սիրուն պատկեր (մէկ արար) :

3.— Կաղանդ պապան կուգայ (տրամախօսութիւն, մէկ արար) :

Խմբերգ, երգ եւ արտասանութիւն : Կաղանդ պապայէն նուէր պիտի ստանան սրահին մէջ ներկայ եղող բոլոր պզտիկները :

Սիրով կը հրաւիրուին, Վիզզօղի, Լանսէյլի եւ Ռընաժի հայրենակիցները իրենց պզտիկներով :



## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ – Քաշանի Մուրատ խումբին կողմէ :

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ, ԺԱՄԸ 16էն 23, ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՄԷՋ, 17 ՌԻՒ ՊԼԷՕ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

ՊԻՒՖԷ — ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի մաս-նաճիւղին կողմէ, այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն 2 :

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

**Compagnons du Rythme**

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Յետաձգուած է սրահի անյարմարու-թեան պատճառով :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Ճիպէլի որբանոցի նախկին սաները ժողովի կը հրաւիրուին այս Կի-րակի, կէսօրէ ետք ժամը 3ին, Ռեժան քաֆէի վերնայարկը, մեթրօ Քատէի ճիշդ դիմացը :

### Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ – ՄԿՐՏԻՉ

Այս Ուրբաթ, Տօն Անուանակոչու-թեան, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկե-ղեցւոյն մէջ պիտի մատուցուի պմասնա-ւոր պատարագ, յետ պատարագի պիտի կատարուի տունօրհնէքի արարողութիւն:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Մ. Ալիքսանեան կը ծա-նուցանէ թէ այս Կիրակի առաւօտ Փա-րիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատար-ուի իր ամուսնոյն՝

ՄԻՀՐԴԱՏ ԱԼԻՔՍԱՆԵԱՆԻ

մահուան Բ. տարելիցին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

×

Այրի Տիկին Եպրուհի Նազարէթեան, Տէր եւ Տիկին Սվաճեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կա-տարուի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԿԱՐԱՊԵՏ ՆԱԶԱՐԷԹԵԱՆԻ

տաքրոջ եւ հօրեղբօր ԳՐԻԳՈՐ ՆԱԶԱ-ՐԷԹԵԱՆԻ եւ եղբօր եւ մօրեղբօր՝ ՏԻԳ-ՐԱՆ ՎԱՐԴԵՐԵԱՆԻ յիշատակին :

Այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

ԿԻՐԱԿԻ 15 Յունուար, ճիշդ ժամը 10-ին հանդիսաւոր պատարագ եւ Գահակա-լութիւն Կարապետ Գերպ. Ամասիոյի Եպիսկոպոսի, նախագահութեամբ քահա-նայապետական Նուիրակ Գերպ. Փօլ Պեր-թոլիի :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժո-ղովուրդը ներկայ գտնուելու այդ պաշ-տօնական արարողութեան :

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Նախընտրաբար այր եւ կին մը կամ կին մը հաստատութեան մը մէջ իբրեւ խոհարար կամ հանդերձատան աշ-խատանքներու համար :

Դիմել՝ Հայ Ընծայարան :

3, Ave. Grandchamp, LE PECQ

TEL. 963.01 72





Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ
ՓԱՐԻԶԻ ՄԷՋ
ԱՊՐԻԼ 9ԻՆ

### ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ

Իսիի Խրիմեան վարժարանի ամավերջի հանդէսը այս Կիրակի ժամը 16ին վար-ժարանին մէջ:

Գեղարուեստական խնամեալ բաժին, արտասանութիւններ, երգեր, նուագ եւն:

Աշակերտութեան կողմէ պիտի ներկա-յացուի մանկական թատերախաղ մը՝

« ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ՄՍՈՒՐ »

Իսիի գաղութէն եւ ծնողքներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ սոյն հանդէ-սին, քաջալերելու համար դպրոցին երկ-սեռ աշակերտութիւնը :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ֆրճ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սը-րահին մէջ:

Օրակարգ.— Հ. Յ. Դ. Ֆրճ. ժողովի պատգամաւորներու զեկուցում եւ ընտ-րութիւն :

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւի-րէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին:

Ներկայ կ'ըլլայ Ֆրճ. կոմիտէի ներկա-յացուցիչը :

Կը խնդրուի ընկերներէն ճշդապահ ըլ-լալ :

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ – Քաջանի Մուրատ խումբին կողմէ :

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ, ԺԱՄԸ 16էն 23, ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՄԷՋ, 17 ՐԻՒ ՊԼԷՕ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

ՊՈՒՖԷ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ

## ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Սէն Ժեռմէնէն Պ. Թովմաս Մարկոսեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր կնքահօր Պ. Մկրտիչ Ժամկոչեանի (Սէն Լուի Մարսէյլ) :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Պ. Գրիգոր Այանեան, Տէր եւ Տիկին Անդրանիկ Այանեան, Տէր եւ Տիկին Վահան Այանեան, Տէր եւ Տիկ. Պօղոս Խօքսիւզեան (Վիէն), Տէր եւ Տիկ. Գէորգ Պաղտասարեան (Ս. Մօրիս) եւ բոլոր ընտանեկան պարագաները, իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով եւ ծաղկեպսակով մասնակցեցան իրենց անհուն վշտին՝

ՏԻԿԻՆ ՄԱՐԻԱՄ ԱՅԱՆԵԱՆԻ

դառնակսկիծ եւ անակնկալ մահուան առթիւ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի հանդիսաւոր պատարագ Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ : Յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի եկեղեցւոյ բարերարներէն ողբացեալ Պ. Գաբրիէլ Իփէքճեանի (Հոլանտա) մահուան քառասունքին առթիւ :

×

Այրի Տիկին Մարիամ Թաղէոսեան, Տէր եւ Տիկին Հրանդ Թաղէոսեան, Տէր եւ Տիկին Մելքոն Թաղէոսեան, Տէր եւ Տիկին Միքայէլ - Մարգրիտ Տէր - Յակոբեան, Տէր եւ Տիկին Սարգիս Փողհարեան, Պետրոսեան եւ Տէր - Պետրոսեան ընտանիքներ, կը ծանուցանեն թէ, այս Կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Լիոնի Հայոց եկեղեցւոյ մէջ, իրենց ամուսնոյն, հօր, աներհօր եւ հօրաքրոջ որդւոյն՝

ՊՕՂՈՍ ԹԱԴԷՈՍԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՆՈՒԷՐ

Տիկին Այանեանի մահուան առթիւ, Վիէնէն Այրի Տիկին Եղիսաբէթ Այանեան կը նուիրէ փոխան ծաղկեպսակի յիսուն Ն. Ֆ. Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին : Նոյն նպատակով, Պ. Պօղոս Խօքսիւզեան (Վիէն) կը յատկացնէ տասը Ն. Ֆ. եւ տասը Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման :

## ՀՐԱՒԷՐ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Փարիզի Հայ Աղք. Ընկերակցութիւնը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամները 26 Յունուար, Հինգշաբթի ժամը 18ին, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ :

ՕՐԱԿԱՐԳ.— Սէն Ռաֆայէլի ծերանոցին (Հոմ Արմէնիէն) շուրջ մեր Ընկերակցութեան եւ հետեւեալ մարմիններու հետ գոյացած համաձայնութիւններուն տեղեկատուութիւն եւ վաւերացում .—

Ա) Միացեալ Ազգերու Կազմակերպութեան Տարագիրներու տնօրէնութիւն :

Բ) Օտար տարագիրներու տեղաւորման ընկերակցութիւն :

Գ) Գաղթականներու Ընկերային Օգնութեան Կազմակերպութիւն :

Դ) Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութիւն :

Օրակարգի կարեւորութեան պատճառաւ կը յանձնարարուի ստիպողական ներկայութիւն :

Դիւան վարչութեան (ԿՆԻՔ)



## ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ

Իսիի Խրիմեան վարժարանի ամավերջի հանդէսը այս Կիրակի ժամը 16ին վարժարանին մէջ :

Գեղարուեստական խնամեալ բաժին, արտասանութիւններ, երգեր, նուագ եւն :

Աշակերտութեան կողմէ պիտի ներկայացուի մանկական թատերախաղ մը՝

« ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ՄՍՈՒՐ »

Իսիի գաղութէն եւ ծնողքներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ սոյն հանդէսին, քաջալերելու համար դպրոցին երկսեռ աշակերտութիւնը :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

ԿԻՐԱԿԻ 15 Յունուար, ճիշդ ժամը 10-ին հանդիսաւոր պատարագ եւ Գոհաբանութիւն Կարապետ Գերպ. Ամատունի Եպիսկոպոսի, նախագահութեամբ քահանայապետական Նուիրակ Գերպ. Փօլ Պիրթոլիի :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այդ պաշտօնական արարողութեան :

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Պօմոնի Կապ. Խաչի վարչութեան կողմէ :

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի :

Ի Նպաստ դպրոցին եւ կարօտ հիւանդներուն :

Շաբաթ, 21 Յունուար, ժամը 21ին, Պօմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ :

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

### ՍԱՅԱԹ ՆՈՎԱ

(ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ.— (Քեմանչիստ Համօ, Օր. Վարդենի Կէչիճեան, Պ. Ս. Պէշկէօթիւրեան, դերասան Կ. Մութաֆեան, Պ. Գ. Թիւթէլեան, Պ. Սիսակ, եւայլն) :

Պարերու եւ խրախճանքի տեսարաններուն կը մասնակցին Հայ Արիներն ու Արենոյշները :

Արեւելեան «Սազանդար» նուագախումբը կը ղեկավարէ Թառիստ Պարոյր :

Դաշնակահար՝ Աբիկ :

## ԾԱԽՈՒ Է ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Մեկնումի պատճառով ծախու է նպարավաճառի խանութ մը, ապրանքով կամ առանց ապրանքի, որ ունի խոհանոց մը եւ հինգ սենեակնոց յարկաբաժին մը վրան : Վարը՝ երկու մթերանոց եւ մէկ կառատուն : Գրել Յառաջին որ կը փոխանցէ կամ հեռաձայնել՝

49.51-58 A Décines (Isère).

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի մասնաճիւղին կողմէ, այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն 2 :

ՍԱԼ ՏԷ ՖԷԹԻ ՄԷՋ

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

**Compagnons du Rythme**

## ԱԼՖՈՐՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի, Ալֆորվիլի Ս. Պօղոս - Պետրոս եկեղեցւոյն մէջ Ս. Ծննդեան տօնին առթիւ հանդիսաւոր Ս. պատարագ պիտի մատուցանէ եւ պիտի քարոզէ Կաթողիկոսական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :

Նոյն օրը կէսօրէ վերջ ժամը 3ին, եկեղեցւոյ մէջ տեղի ունենալիք դպրոցական հանդէսին Եպիսկոպոսը պիտի նախագահէ :

Սիրով կը հրաւիրուին բարեպաշտ հաւատացեալները :

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ծրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ :

Օրակարգ.— Հ. Յ. Դ. Ծրջ. ժողովի պատգամաւորներու զեկուցում եւ ընտրութիւն :

## ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Ֆրանսական Բանակի Հայ Նախկին Ռազմիկներու Միութեան ընդհ. ժողովը՝ այս Կիրակի ժամը 14ին, Միութեան կեդրոնատեղին՝ 32, Րիւ տը Թրէվիզ :

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ - Քաշանի Մուրատ խումբին կողմէ :

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ, ԺԱՄԸ 16էն 23, ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՄԷՋ, 17 ՐԻՒ ՊԼԷՕ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

ՊԻՒՖԷ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ

*ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄԻՆԸ* շնորհա - կալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Տոքթ. Կիւլպէնկեանէ քսան Ն. Ֆ. եւ Տէր եւ Տիկին Տիգրան Կիւլպէկեանէ քսան Ն. Ֆ. իրենց որդւոյն ու թոռան մահուան տարելիցին առթիւ:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պօղոս Թադէոսեանի մահուան առթիւ Մարսէյլէն Պ. Մինաս Պօղոսեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Լիոնի Եկեղեցիին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը ցաւակցութիւն կը յայտնէ Այրի Տրքնցկին Մարի Ասատուրեանի մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Ղազար Դանիէլեանի:

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ*
*ԲՈԼՈՐ ՍԵԲԱՍՏԱՑԻՆԵՐՈՒՆ*

Մուրատ Ուսումնասիրացը կոչ կ՚ընէ բոլոր Սեբաստացիներուն, ուր որ ալ ըլլան եւ ինչ պայմաններու մէջ ալ գտնըւին, որ ներկայանան եւ մեծամասնութեամբ քուէարկեն նոր վարչութեան ընտրութիւնը: Կիրակի 22 Յունուար, ժամը 15ին ԻՍԻՒ ԽՐԻՄԵԱՆ ԴՊՐՈՑԸ:

Այս Միութիւնը որ կը կրէ մեր մեծ ազգային հերոս ՄՈՒՐԱՏի անունը եւ այդ անունը անմահացնելու համար կազմակերպուած է, բոլոր Սեբաստացիներու սրտին կը խօսի:

Անհրաժեշտ պէտք է ամէն Սեբաստացի այդ օրը գայ եւ իր պարտականութիւնը կատարէ նոր վարչութիւն մը ընտրելով:

Մեր պարտականութիւնը եւ յարգանքը կատարած պիտի ըլլանք Մխիթար Աբբային, Վարուժանի եւ հերոս Մուրատի հանդէպ:

*ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ*
*ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

FABRIQUE DE BONNETERIE CONFECTION

GROS DEMI GROS

**Maison Michel**

17, Rue Saint-Joseph PARIS (2e)
(Métro : Sentier ou Montmartre)
Tél. : CEN. 97-69

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ստիպողաբար լաւ ձեռնարկուներ (անթրըփրնէօր) շըմիզիէի համար, ինչպէս նաեւ կտրելու վարպետ կին մը (ֆուփէօզ) վկայականով ներկայանալ: Եւ լաւ գործաւորուհիներ շըմիզիէի համար:

Դիմել ամէն օր ժամը 10–12 եւ 15–18:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Պօմոնի Կապ. Խաչի վարչութեան կողմէ:

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի:

Ի նպաստ դպրոցին եւ կարօտ հիւանդներուն:

Շաբաթ, 21 Յունուար, ժամը 21ին, Պօմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

## ՍԱՅԱԹ ՆՈՎԱ

(ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ.— (Բեմանչիստ Համօ, Օր. Վարդենի Կէչիճեան, Պ. Ս. Պէչկէօթիւրեան, դերասան Կ. Մութաֆեան, Պ. Գ. Թիւթէլեան, Պ. Սիսակ, եւայլն):

Պարերու եւ խրախճանքի տեսարաններուն կը մասնակցին Հայ Արիներն ու Արենոյշները:

Արեւելեան «Սազանդար» նուագախումբը կը ղեկավարէ Թաւիտ Պարոյր:

Դաշնակահար՝ Աբիկ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ*

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած տարեկան թատերական ներկայացումը՝

ԿԻՐԱԿԻ, Փետրուար 26ին
կէսօրէ ետք, ժամը 15.30ին:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քառէի վերնայարկը:

Կը դասախօսէ ճարտարագէտ *ՎԱՉԳԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*: Նիւթն է՝ «Գիտական խիստ այժմէական հարցեր»:

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՉՈՒԱ՛ՐԹ
Մայրամուտէն մինչեւ կէս գիշեր
ՉՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

*ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆՈՒԱՐ* 29, *ԺԱՄԸ* 17էն 24

**AMBASSADEURS**
3, Ave. Gabriel, 3

*ԵՐԳ ՈՒ ՊԱՐ*
*ՄԵԾ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ*

**Attractions** *ԽԱՂԵՐ* **Bar-Buffet**

ՏԱՐԻ ՆՈՐ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՓԱՌՔ ՆՈՐ

ՀՆԱԳՈՅՆ ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԻ ԳՈՀԱՐ ՄԱՆՐԱՆԿԱՐՆԵՐՈՒՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ

— 1960 —

*...« Մեծ ժողովուրդները իրենց մնայուն պատմութիւնը միայն սուրով, հուրով եւ արիւնով չեն գրեր, այլ եւ գրիչով, վրձինով եւ արուեստով՝ իրենց մշակոյթով: Անոնցմէ է հայ ժողովուրդը »:*

*ՀԱՅԱՍՏԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՈՒԱԾ՝ ՓԱՐԻԶ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ*

*Անտիպ եւ գունաւոր նկարներով*

*ՖՐԱՆՍԱԿԱՆ ՇՔԵՂ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ*

Մեծադիր փառաւոր հատոր մը, 200 էջ, 100 արտատպում:
Գին 120 Ն. Ֆ.

*Դ Ի Մ Ե Լ*
ՅԱՌԱՋ
32, Rue de Trévise, 32
PARIS (IX e)

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 12, Կիրակի ժամը 16 – 24

**LES AMBASSADEURS**

**3, Avenue Gabriel - Champs-Élysées**

*Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր*

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLEANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին — Մուտք 5 Ն. Ֆ.

*Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ* 67 – 03

*ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը* 19.30*ին: Հակառակ պարագային պարահանդէսի կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ:*

ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆ

**SICOMEX**

*Ֆրանսական կառավարութենէն եւ Մոսկուայի Ինթուրիսթէն ճանչցուած հաստատութիւն:*

**SICOMEX**

20, Rue Royale, PARIS 8e
Téléphone : OPE. 67-77
Métro : CONCORDE et MADELEINE

*ՄԻԱԿ ՏՈՒՆԸ*

*որ կարելիութիւնը կուտայ ձեզի, հետեւեալ երկու ձեւերով ծրարներ ղրկելու:*

1.— *Մեր ծախած ապրանքներով, որոնց ցանկը ճոխ է եւ որակը ընտիր:*

*ԻՏԱԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում*, քարտիկան *եւ զուտ բուրդէ վերնաշապիկներ՝ վերջին նորաձեւութիւն:*

*ԱՆԳԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում, զուտ բուրդէ կերպասներ եւ այլ ապրանքներ: Մուշտակի նմանակ վերարկուներ, անձրեւանոց, ներքնազգեստ, գուլպայ, փիրլինեան բուրդով շալ, կօշիկ, ժամացոյց, եւայլն... ԱՄԷՆԷՆ ՆՊԱՍՏԱՒՈՐ ԳԻՆԵՐՈՎ:*

*Մեր ապրանքներուն գիներուն մէջ նախատեսուած են մաքսային տուրքերը, արտօնութեան, ապահովագրութեան, ծրարումի եւ ստացագրի ծախքերը:*

*ՈՉ ՄԷԿ ԾԱԽՔ ծրարը ստացողին կողմէ:*

*Մեր ապրանքներուն ԱՌԱՔՈՒՄԻ ծախքն է* 25 *Ն. Ֆ. մինչեւ* 20 *քիլօ:*

2.— *Ձեր բերած ապրանքներն ալ կ'ընդունինք, պայմանաւ որ նոր ըլլան:*

*ԱՐԱԳ ՅԱՆՁՆՈՒՄ՝* 2–4 *շաբաթէն:*

ՈՒԶԵՑԷՔ ԵՒ ԱՆՄԻՋԱՊԷՍ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՔ ՄԵՐ ԲԱՑԱՏՐԱԿԱՆ ԵՒ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ:

**MORY et Cie**

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ:

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք: Նուազագոյն ծախքերով կը ղրկենք Խորհրդ. Միութիւն:

*Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—*

10, Rue St. Vincent de Paul, Paris 10e
(PRÈS DE LA GARE DU NORD)
Téléphone : TRU. 27-70

# ԵՒՐՈՊԱՅԻ

ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉԸ

ՀԷԼՎԱ
ԼՈԳՈՒՄ
Սուսամ _ ՀԷԼՎԱ

LE BOSPHORE
MARQUE DEPOSEE

ԹԱՀԻՆ
ՇԱՐՈՑ
(ՌՈՃԻԿ)
ՎԱՐԴԷ_ԱՆՈՅՇ

ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ...

**CHOC-ALVA · CHOCO-LOC**

Sté le BOSPHORE
SIÈGE SOCIAL
2, Rue Louis Astouin /Marseille (2ème)

Տէր եւ Տիկին Վահէ Չիլինկիրեան ,
Պ. Վահրամ Խաչատուրեան ,
Տէր եւ Տիկին Շարլ Բասմանեան եւ զաւակները ,
Տէր եւ Տիկին Գէորգ Գէորգեան եւ զաւակը ,
Օր. Նորա Չիլինկիրեան ,
Տիկին Արուսեակ Յակոբեան ,
Պ. Ստեփան Յակոբեան ,
Պ. Եդուարդ Յակոբեան ,
Ինչպէս նաեւ Գէորգեան, Չիլինկիրեան, Բասմանեան, Մինասեան, Դուրեան եւ Էքսէրճեան ընտանիքները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ, մօրաքրոջ եւ ազգականին՝

## ՍԱԹԵՆԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ
(ԾՆԵԱԼ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ)

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ Յունուար 14ին, իր բնակարանը :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Երեքշաբթի (Յունուար 17), ժամը 13·45ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Վեզինէի գերեզմանատունը :

Մասնաւոր մահագդ չստացողներէն կը խնդրուի ներկայ իբր այդ նկատել :

36, Bld. d'Auteuil, Boulogne-sur Seine

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Տէր եւ Տիկին Վահէ Չիլինկիրեանի եւ ընտանեկան պարագաներուն :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ս. Ծնունդի տօնին առթիւ, Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.—

Տէր եւ Տիկ. Ճ. Պահատուրեան 200 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կ. Մակէսեան 150. Տէր եւ Տիկին Յ. Յովհաննէսեան (Թէլէ-Բլէօղ) յիսուն, Երէցկին Զ. Գարիպեան քսան, Տիկ. Սիմոնեան տասը Ն. Ֆ.:

Հանգուցեալ Աղնիւ Քէօլէեանի մահուան քառասունքին առթիւ Պ. Կարպիս Պզտիկեանէ տասը Ն. Ֆ., Պ. Անանիա Խազնէճեան իր կնոջ մահուան Բ. տարելիցին առթիւ քսան Ն. Ֆ.:

×

Լիոնի Ազգ. Տիկնանց Միութիւնը Ս. Ծնունդի տօներուն առթիւ շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները բարեպաշտ ազգայիններէ .—

Տէր եւ Տիկին Ճ. Պահատուրեան երեք հարիւր Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կարապետ Մակէսեան 150, Տիկին Երջանիկ Ուզունեանէ յիսուն, Պ. Անանիա Խազնէճեանէ 10, Տիկին Արտեմիս Մանուկեանէ 10 Ն. Ֆրանք :

×

Պոմոնի Կ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է .—

Տիկին Էլիզ Շիմշիրեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Պ. Արամ Թէրզիպաշեանէ քսան Ն. Ֆ. դպրոցին, Պ. Մելքոն Պօղոսեանէ տասը Ն. Ֆ., Պ. Մեսրոպ Քառքասեանէ հինգ Ն. Ֆ., նոյնպէս դպրոցին :

Տէր եւ Տիկին Քրիստափոր Սաղըրեանէ Պ. Կէօզիւտեանի թաղման առթիւ Պ. Արամ Գաբրիէլեանէ տասը Ն. Ֆ.: (Էքս ան Փրովանս) եւ Տէր եւ Տիկին Թիւֆէնկճեանէ (Էքս ան Փրովանս) տասնական Ն. Ֆ. Կզ Խաչին :

Տիկին Խօժէնի Իշխանեանէ տասը Ն. Ֆ. եւ Տիկին Աղնիւ Տէրտէրեանէ քսան Ն. Ֆ. հիւանդներուն համար :

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ
ԲՈԼՈՐ ՍԵԲԱՍՏԱՑԻՆԵՐՈՒՆ

Մուրատ Ուսումնասիրացը կոչ կ'ընէ բոլոր Սեբաստացիներուն, ուր որ ալ ըլլան եւ ինչ պայմաններու մէջ ալ գտնուին, որ ներկայանան եւ մեծամասնութեամբ քուէարկեն նոր վարչութեան ընտրութիւնը : Կիրակի 22 Յունուար, ժամը 15ին ԻՍԻԻ ԽՐԻՄԵԱՆ ԴՊՐՈՑԸ :

Այս Միութիւնը որ կը կրէ մեր մեծ ազգային հերոս ՄՈՒՐԱՏի անունը եւ այդ անունը անմահացնելու համար կազմակերպուած է, բոլոր Սեբաստացիներու սրտին կը խօսի :

Անհրաժեշտ պէտք է ամէն Սեբաստացի այդ օրը գայ եւ իր պարտականութիւնը կատարէ նոր վարչութիւն մը ընտրելով :

Մեր պարտականութիւնը եւ յարգանքը կատարած պիտի ըլլանք Մխիթար Սեբաստացիի, Վարուժանի եւ հերոս Մուրատի հանդէպ :

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ
ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՏՕՆԱԾԱՌ - ՀԱՆԴԷՍ
«ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած՝ Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ : Մասնակցութեամբ Ազգային դպրոցի աշակերտութեան : Ղեկավարութեամբ դպրոցին ուսուցիչ Պ. Թրազօշի :

22 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ :

Պիտի ըլլան արտասանութիւններ, թըմախօսութիւններ եւ այլ հաճոյալի անակնկալներ :

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ առանձին յայտարարութեամբ :

Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր : Մուտքը ազատ է :

ԼՈՅՍ ՏԵՍԱԾ Է

ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆԻ

## 1961 Ի ԱՄԷՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ
Ճոխ եւ այլազան բովանդակութեամբ
Բաղկացած 15 մասերէ

Մենք եւ մեր ընթերցողները, Գրական Աշխարհ, Հայ Կեանքը Երէկ եւ Այսօր, Արուեստի Աշխարհ, Հայաստան, Պատմութիւն Կիպրոսի, Մեր գաղութները՝ Կիպրոս, Սարէն Զորէն, Երգիծանք եւ Ծիծաղ, Անցքերը անցեալ տարեշրջանին, Մարզաշխարհ, Մահերգութիւն, Յաւելուած, նաեւ անցնող ութ հատորներուն (1954 - 1961) ընդհանուր նիւթերու ցանկը, մեծ խնամքով պատրաստուած :

670 էջ, մաքուր տպագրութիւն, ընտիր թուղթ, գին՝ 14 եւ 16,50 Ն. Ֆ.:

Դիմել ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ գրատուն :

51, Rue Mr.-le-Prince, PARIS (6e)



ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Պօմոնի Կապ. Խաչի վարչութեան կողմէ :
Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի :
Ի նպաստ դպրոցին եւ կարօտ հիւանդներուն :

Շաբաթ, 21 Յունուար, ժամը 21ին, Պօմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ :

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

## ՍԱՅԱԹ ՆՈՎԱ
(ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ.— (Բեմանչիստ Համօ, Օր. Վարդենի Կէչիճեան, Պ. Ս. Պէշկէօթիւրեան, դերասան Կ. Մութաֆեան, Պ. Գ. Թիւթէլեան, Պ. Սիսակ, եւայլն) :

Պարերու եւ խրախճանքի տեսարաններուն կը մասնակցին Հայ Արիներն ու Արենոյշները :

Արեւելեան «Սազանդար» նուագախումբը կը ղեկավարէ Թառիստ Պարոյր :

Դաշնակահար՝ Աբիկ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քատէի վերնայարկը :

Կը դասախօսէ ճարտարագէտ ՎԱԶԳԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ : Նիւթն է՝ «Գիտական խիստ այժմէական հարցեր» :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ
ՓԱՐԻԶԻ ՄԷՋ
ԱՊՐԻԼ 9ԻՆ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 12ԻՆ
ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20·30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանին ներքնասենեակը : Ձեկուցում պատգամաւորի : Կարեւոր օրակարգ :

ՃՇԴՈՒՄ.— Բագրատիդի յուղարկաւորութեան կազմակերպութեան հոգատարութիւնը ստանձնած էր ֆրանսական բանակի օտարահպատակ Նախկին Ռազմիկներու Միութիւնը (Շնորհակալիքին մէջ սխալմամբ գրուած էր Հայ Նախկին Սպայից Միութիւն) :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի :

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Ռիւ Տինուառի սրահը,

STUDIO CREQUI, 24, RUE DUNOIR

Կը խօսի ՏԻԿԻՆ Ա. ՍԻՍԼԵԱՆ
Գեղարուեստական ճոխ բաժին :

Մանուկներու կողմէ պիտի ըլլան խմբերգներ եւ արտասանութիւններ, կենդանի պատկեր մը, հայկական պարեր եւ Թիթեռնիկներու երգախառն պարը :

Պիտի երգէ Օր. Անժէլ Կարապետեան Լիոնի երաժշտանոցէն :

Հայկական ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ իր նուէրները պիտի բաժնէ ներկայ բոլոր պզտիկներուն :

Մուտքը ազատ է :

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած տարեկան թատերական ներկայացումը՝

ԿԻՐԱԿԻ, Փետրուար 26ին
կէսօրէ ետք, ժամը 15·30ին :





Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Ոմն, Մինիխ յիշուն Ն. Ֆ., Վիէնէն Տիկին Եղիսաբէթ Այանեանէ յիշուն Ն. Ֆ., Պօղոս Խօքսուզեանէ տասը Ն. Ֆ., Տիկին Մարիամ Այանեանի, ծնեալ Խանզատայեանի— (Ս. Շամոն) մահուան առթիւ :

×

| | |
|---|---|
| Նախկին գումար | 13.467,20 |
| Տէր եւ Տիկին Արթինեան (Լէ Մարթիկ) Ն. Ֆ. | 10,— |
| Փրօֆ. Մանասէ Սեւակէ (20 տոլար) | 99,— |
| Կայծակ Պօյաճեան (50 մարք) | 59,— |
| Սրապիոն Պօղոսեան (50 մարք) | 59,— |
| Սերժ Թորոսեանէ | 100,— |
| Տիկ. Արաքսի Վ. Ֆիրանեանէ | 10,— |
| Տիկ. Անսբիկեանէ | 10,— |
| Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճ. | 30,— |
| Մուշեղ Եզնիկեան | 10,— |
| Ոմն Փարիզէն | 60,— |
| Գրիգոր Աղամեանէ | 100,— |
| Յովհ. Պատուրեան | 100,— |
| Յակոբ Խաչատուրեան | 100,— |
| Արաքսի Գազանճեան | 20,— |
| Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասն. Ալժերիոյ հայրենակիցներէն (ցանկը հրատարակուած) | 500,— 1550,— |
| Ընդհ. գումար՝ | 16.224.20 |

## ՆՈՒԷՐՆԵՐ

Վերսայլէն Պ. Հրանտ Պալեան իր ապաքինման առթիւ, հետեւեալ նուէրները կ'ընէ.— 30 Ն. Ֆ. Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին, 30 Ն. Ֆ. Կարմիր Խաչի օգափոխութեան կայանին եւ քսանական Ն. Ֆ. Կապ. Խաչին (օգափոխութեան կայան), Աղքատախնամին, Որբերու Օգն. Մարմնին եւ Պալաքեան Սրբազանի չիրմին : (Ստանալ Յառաջէն) :

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

### ԲՈԼՈՐ ՍԵԲԱՍՏԱՑԻՆԵՐՈՒՆ

Մուրատ Ուսումնասիրացը կոչ կ'ընէ բոլոր Սեբաստացիներուն, ուր որ ալ ըլլան եւ ինչ պայմաններու մէջ ալ գտնուին, որ ներկայանան եւ մեծամասնութեամբ քուէարկեն նոր վարչութեան ընտրութիւնը : Կիրակի 22 Յունուար, ժամը 15ին ԻՍԻԻ ԽՐԻՄԵԱՆ ԴՊՐՈՑԸ :

Այս Միութիւնը որ կը կրէ մեր մեծ ազգային հերոս ՄՈՒՐԱՏԻ անունը եւ այդ անունը անմահացնելու համար կազմակերպուած է, բոլոր Սեբաստացիներու սրտին կը խօսի :

Անհրաժեշտ պէտք է ամէն Սեբաստացի այդ օրը գայ եւ իր պարտականութիւնը կատարէ նոր վարչութիւն մը ընտրելով :

Մեր պարտականութիւնը եւ յարգանքը կատարած պիտի ըլլանք Մխիթար Աբբայի, Վարուժանի եւ հերոս Մուրատի հանդէպ :

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ
ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ

### «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած՝ Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ : Մասնակցութեամբ Ազգային դպրոցի աշակերտութեան : Ղեկավարութեամբ դպրոցին ուսուցիչ Պ. Թրազօշի :

22 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ :

Պիտի ըլլան արտասանութիւններ, տըրամախօսութիւններ եւ այլ հաճոյալի անակնկալներ :

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ առանձին յայտարարութեամբ :

Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր : Մուտքը ազատ է :

## 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1 ԷՆ

Յառաջի բաժանորդագրութեան նոր պայմաններն են.—

**ՖՐԱՆՍԱ**

| | | |
|---|---|---|
| Տարեկան բաժնեգին՝ | Ն. Ֆ. | 50 |
| Վեցամսեայ | Ն. Ֆ. | 27 |
| Եռամսեայ | Ն. Ֆ. | 15 |
| Հատը՝ | Ն. Ֆ. | 0,25 |

**ԱՐՏԱՍԱՀՄԱՆ**

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան | 12 տոլար | Ն. Ֆ. | 60 |
| Վեցամսեայ | 7 տոլար | Ն. Ֆ. | 35 |

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Պօմոնի Կապ. Խաչի վարչութեան կողմէ :

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի :

Ի նպաստ դպրոցին եւ կարօտ հիւանդներուն :

Շաբաթ, 21 Յունուար, ժամը 21ին, Պօմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ :

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

### ՍԱՅԱԹ ՆՈՎԱ

(ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ.— (Քեմանչիստ Համօ, Օր. Վարդենի Կէչիճեան, Պ. Ս. Պէշկէօթիւրեան, դերասան Կ. Մուքաֆեան, Պ. Գ. Թիւթէլեան, Պ. Սիսակ, եւայլն) :

Պարերու եւ խրախճանքի տեսարաններուն կը մասնակցին Հայ Արիներն ու Արենոյշները :

Արեւելեան «Սազանտար» նուագախումբը կը ղեկավարէ Թաւիտ Պարոյր :

Դաշնակահար՝ Աբիկ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քատէի վերնայարկը :

Կը դասախօսէ ճարտարագէտ ՎԱԶԳԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ : Նիւթն է՝ «Գիտական խիստ այժմէական հարցեր» :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի :

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Ռիւ Տիւնուառի սրահը,

STUDIO CREQUI, 24, RUE DUNOIR

Կը խօսի ՏԻԿԻՆ Ա. ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին :

Մանուկներու կողմէ պիտի ըլլան խմբերգներ եւ արտասանութիւններ, կենդանի պատկեր մը, հայկական պարեր եւ թիթեռնիկներու երգախառն պարը :

Պիտի երգէ Օր. Անժէլ Կարապետեան Լիոնի երաժշտանոցէն :

Հայկական ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ իր նուէրները պիտի բաժնէ ներկայ բոլոր պզտիկներուն :

Մուտքը ազատ է :

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած տարեկան թատերական ներկայացումը՝

ԿԻՐԱԿԻ, Փետրուար 26ին
կէսօրէ ետք, ժամը 15.30ին :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Այս Չորեքշաբթի, երեկոյեան ժամը 9ին, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ :

Կը խօսի ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ :

Կը հրաւիրուին Նոր Սերունդի ընկերները, ընկերուհիները եւ համակիրները :



## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՊՐԻԼ 9ԻՆ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 12ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20.30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանին ներքնասենեակը : Զեկուցում պատգամաւորի : Կարեւոր օրակարգ :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը : Կարեւոր օրակարգ.— Զեկուցում պատգամաւորի : Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 15ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահը : ՕՐԱԿԱՐԳ.— Պարահանդէսի պատրաստութիւն : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՆՈՒԷՐ

Ս. Ծնունդի տօնին առթիւ Պ. Ս. Մարգարեան (Փարիզ) քսան քիլօ ալիւր կը նուիրէ Շաւիլի եկեղեցիին :

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20·30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանին ներքնասենեակը: Զեկուցում պատգամաւորի: Կարեւոր օրակարգ:

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ.— Զեկուցում պատգամաւորի: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21–ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէններ.—

ՀԱՄԱԶԱՍՊ, այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին:

ԹԱԹՈՒԼ, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3·30ին:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Պօմոնի Կապ. Խաչի վարչութեան կողմէ:

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի:

Ի նպաստ դպրոցին եւ կարօտ հիւանդներուն:

Շաբաթ, 21 Յունուար, ժամը 21ին, Պօմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

### ՍԱՅԱԹ ՆՈՎԱ
(ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ.— (Բեմանչիստ Համօ, Օր. Վարդենի Կէչիճեան, Պ. Ս. Պէշկէօթիւրեան, դերասան Կ. Մուրաֆեան, Պ. Գ. Թիւթէլեան, Պ. Սիսակ, եւայլն):

Պարերու եւ խրախճանքի տեսարաններուն կը մասնակցին Հայ Արիներն ու Արենոյշները:

Արեւելեան «Սազանդար» նուագախումբը կը ղեկավարէ Թաւիստ Պարոյր:

Դաշնակահար՝ Աբիկ:

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած տարեկան թատերական ներկայացումը՝

ԿԻՐԱԿԻ, Փետրուար 26ին
կէսօրէ ետք, ժամը 3·30ին:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ
ՓԱՐԻԶԻ ՄԷՋ
ԱՊՐԻԼ 9ԻՆ

### ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 12ԻՆ
ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 15ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահը:

ՕՐԱԿԱՐԳ.— Պարահանդէսի պատրաստութիւն: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 18ին, հայկական ձայնաւոր պատարագ Նօթըր-Տամ տ'էսփէրանս եկեղեցիին մէջ, 4 Րիւ տիւ Քոմանտան – Լամի, Փարիզ (11), մեթրօ Պրեկէ – Սապէն:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ
«ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած՝ Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ: Մասնակցութեամբ Ազգային դպրոցի աշակերտութեան: Ղեկավարութեամբ դպրոցին ուսուցիչ Պ. Թրագօշի:

22 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Պիտի ըլլան արտասանութիւններ, ողբամախօսութիւններ եւ այլ հաճոյալի անակնկալներ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ առանձին յայտարարութեամբ:

Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր: Մուտքը ազատ է:

## ՀՐԱՒԷՐ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Փարիզի Հայ Ազգ. Ընկերակցութիւնը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամները 26 Յունուար, Հինգշաբթի ժամը 18ին, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ:

ՕՐԱԿԱՐԳ.— Սէն Ռաֆայէլի ծերանոցին (Հոմ Արմէնիէն) շուրջ մեր Ընկերակցութեան եւ հետեւեալ մարմիններու հետ գոյացած համաձայնութիւններուն տեղեկատուութիւն եւ վաւերացում.—

Ա) Միացեալ Ազգերու Կազմակերպութեան Տարագիրներու տնօրէնութիւն:

Բ) Օտար տարագիրներու տեղաւորման ընկերակցութիւն:

Գ) Գաղթականներու Ընկերային Օգնութեան Կազմակերպութիւն:

Դ) Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութիւն:

Օրակարգի կարեւորութեան պատճառաւ կը յանձնարարուի ստիպողական ներկայութիւն:

Դիւան վարչութեան
(ԿՆԻՔ)

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի:

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Րիւ Տիւնուառի սրահը,

STUDIO CREQUI, 24, RUE DUNOIR

Կը խօսի ՏԻԿԻՆ Ա. ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանուկներու կողմէ պիտի ըլլան խմբերգներ եւ արտասանութիւններ, կենդանի պատկեր մը, հայկական պարեր եւ թիթեռնիկներու երգախառն պարը:

Պիտի երգէ Օր. Անժէլ Կարապետեան Լիոնի երաժշտանոցէն:

Հայկական ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ իր նուէրները պիտի բաժնէ ներկայ բոլոր պզտիկներուն:

Մուտքը ազատ է:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 3·30ին, Սալ Քանթոնալ (Պորտօ – Պասթիտ):

Ճոխ յայտագիր:

« ԱՄԷՆ ԲԱՆ ԶՈՒՏՈՂ ՏՂԱՆ »
(Տրամախօսութիւն)

« ԼԷՊԼԷՊԻՃԻՆ
(Մանկական ուրախ երգախաղ)

«ԴԵՂՁԿՈՒՀԻՆ եւ ՔԱՂԱՔԱՑԻ ԱՂՋԻԿԸ»
(Դիմախօսութիւն)

«ԿԱՂԱՆԴԸ ԿՈՒԳԱՅ »
(Տրամախօսութիւն)

«ՀԻՒԱՆԴ ՊՈՒՊՐԻԿԸ »
(Տրամախօսութիւն)

Խմբերգ, արտասանութիւն, մենախօսութիւն եւայլն:

Փոքրերուն պիտի բաժնուին նուէրներ եւ մրգեղէններ:

Մուտքը ազատ է

Պ. Սարգիս Տէրտէրեան, Փոնթ Էվէք, (Նախկին մատակարար Խարբերթի գեր – մանական որբանոցին), Տէր եւ Տիկին Յակոբ Տէրտէրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ստեփան Ճիվահիրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յովսէփ Տէրտէրեան եւ զաւակները (Տիթրոյթ, Ամերիկա), Տէր եւ Տիկին Գաբրիէլ Քէչիչեան եւ զաւակները (Փոնթ – Էվէք), Տէր եւ Տիկին Աբրահամ Խօքխուզեան եւ զաւակը (Վիէն), Տէր եւ Տիկին Մարտիկ Նազարէթեան եւ զաւակները (Լանսէ), ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ՏԻԿԻՆ ԶԱՊԷԼ ՏԷՐՏԷՐԵԱՆԻ
(Ծնեալ Վարդերէսեան)

մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 14ին, 88 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Յունուար 17ին Փոնթ Էվէք:

Մասնաւոր մահազդ դրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի:

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Թիւ Տիւնուառի սրահը,

STUDIO CREQUI, 24, RUE DUNOIR

կը խօսի ՏԻԿԻՆ Ա. ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մուտքը ազատ է:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պէրպէրեան ընտանիքը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ յետ պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝

ՄԱՆՆԻԿ ՊԷՐՊԷՐԵԱՆԻ

յիշատակին:

Կը հրաւիրուին ողբացեալ գրագիտուհիին յիշատակը յարգողները:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 15ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահը: ՕՐԱԿԱՐԳ.— Պարահանդէսի պատրաստութիւն: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ
### «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած՝ Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ: Մասնակցութեամբ Ազգային դպրոցի աշակերտութեան: Ղեկավարութեամբ դպրոցին ուսուցիչ Պ. Թրագօշի:

22 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Պիտի ըլլան արտասանութիւններ, թըրամախօսութիւններ եւ այլ հաճոյալի անակնկալներ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ առանձին յայտարարութեամբ:

Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր: Մուտքը ազատ է:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 3·30ին, Սալ Քանքոնյալ (Պորտօ – Պասթիտ):

Ճոխ յայտագիր:

« ԱՄԷՆ ԲԱՆ ԶՈՒՏՈՂ ՏՂԱՆ »
(Տրամախօսութիւն)

« ԼԷՊԼԷՊԻՃԻՆ
(Մանկական ուրախ երգախաղ)

«ԳԵՂՋԿՈՒՀԻՆ եւ ՔԱՂԱՔԱՑԻ ԱՂՋԻԿԸ»
(Դիմախօսութիւն)

«ԿԱՂԱՆԴԸ ԿՈՒԳԱՅ »
(Տրամախօսութիւն)

«ՀԻՒԱՆԴ ՊՈՒՊՐԻԿԸ »
(Տրամախօսութիւն)

Խմբերգ, արտասանութիւն, մենախօսութիւն եւայլն:

Փոքրերուն պիտի բաժնուին նուէրներ եւ մրգեղէններ:

Մուտքը ազատ է

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՊԱՏՄԱԳԻՐՔ
### ԱՏԱՊԱԶԱՐ
### "ԱՍՏՈՒԱԾԱՐԵԱԼ" ՔԱՂԱՔԻՆ

Խմբագրեցին՝ Ա. Պիպէռեան եւ Վ. Եղիշէեան:

Հայաշունչ քաղաքի մը հետաքրքրաշարժ պատմութիւնը:

750 էջ, պատկերազարդ, մաքուր տպագրութիւն:

Գին 20 Ն. Ֆ. (կամ 4 տոլար)

Ստանալու համար դիմել՝

Հ. Ակոնայեան՝

32, Rue de la Paix à Antony (Seine)

Հ. Հոգտանեան՝

15, Rue Gérando, Paris 9e

Տ. Փափազեան՝

86, Rue d'Aubagne, Marseille.

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Պօմոնի կապ. Խաչի վարչութեան կողմէ:

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի:

Ի նպաստ դպրոցին եւ կարօտ հիւանդներուն:

Շաբաթ, 21 Յունուար, ժամը 21ին, Պօմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

### ՍԱՅԱԹ ՆՈՎԱ
(ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ.— (Բեմանչխոտ Համօ, Օր. Վարդենի Կէչիճեան, Պ. Ս. Պէշկէօթիւրեան, դերասան Կ. Մութաֆեան, Պ. Գ. Թիւթէլեան, Պ. Սիսակ, եւայլն):

Պարերու եւ խրախճանքի տեսարաններուն կը մասնակցին Հայ Արիներն ու Արենոյշները:

Արեւելեան «Սազանտար» նուագախումբը կը ղեկավարէ Թառիստ Պաբոյր:

Դաշնակահար՝ Աբիկ:

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ
### ԲՈԼՈՐ ՍԵԲԱՍՏԱՑԻՆԵՐՈՒՆ

Մուրատ Ուսումնասիրացը կոչ կ'ընէ բոլոր Սեբաստացիներուն, ուր որ ալ ըլլան եւ ինչ պայմաններու մէջ ալ գտնուին, որ ներկայանան եւ մեծամասնութեամբ քուէարկեն նոր վարչութեան ընտրութիւնը: Կիրակի 22 Յունուար, ժամը 15ին ԻՍԻԻ ԽՐԻՄԵԱՆ ԴՊՐՈՑԸ:

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ.— Զեկուցում պատգամաւորի: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէները.—

ՀԱՄԱԶԱՍՊ, այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին:

ԹԱԹՈՒԼ, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3·30ին:

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
### ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**

կէսօրէ ետք ժամը 3·30ին

ԸՆԿ. ՄԻՀՐԱՆ ՀԵՐԱՐՏԵԱՆԻ

մահուան առթիւ, Ուրֆայի Հայր. Միութիւնը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ողբացեալ ընկերոջ այրիին եւ ընտանեկան պարագաներուն եւ փոխան ծաղկեպսակի 150 Ն. Ֆ. կը նուիրէ Հայ Մշակոյթի Տան ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ սրահին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ալփորվիլի հանգանակութեան առթիւ

Փարիզի Հայ Մշակոյթի Տան՝ «Սողոմոն Թէհլիրեան» սրահին Օժանդակ մարմինը հրապարակաւ կը յայտնէ Ալփորվիլի եւ շրջակայքի Հայութեան թէ կատարուած հանգանակութեան ընդհ. գումարն է եղած 4408 Ն. Ֆ.: Այս գումարը պիտի յանձնուի Փարիզի Կեդր. Ցանձնախումբին, «Սողոմոն Թէհլիրեան» սրահին անհրաժեշտ բարեզարդումն ու կահաւորումը կատարելու համար :

Այս առթիւ մեր շնորհակալութիւնները կը յայտնենք «Յառաջ»ի խմբագրութեան որ քանիցս իր սիւնակները մեզի տրամադրելով արժանաւոր հանդիսացաւ այս ներուժական գործին յաջողութեան, նոյնիսկ խմբագրական մը նուիրելով, մաղթելով որ միւս գաղութներուն մէջ եւս վարակիչ դառնայ այս «օրինակելի ձեռնարկ»ը :

Շնորհակալութիւններ նաեւ հանգանակիչ մարմնի բոլոր անդամներուն որոնք մեր հրաւէրին սիրով պատասխանելով ստանձնեցին պատասխանատուութիւնը մեր ազգային հերոս «Սողոմոն Թէհլիրեան» սրահին ի նպաստ հանգանակութիւն մը կատարելու :

Վերջապէս մեր գնահատականը կ՚ուղղենք մասնաւորաբար Ալփորվիլի եւ շրջակայքի Հայութեան անխտիր որ հակառակ տնտեսական տագնապին, խանդավառութեամբ ողջունեց այս ձեռնարկը տալով իր սրտաբուխ նուէրները յաւերժացնելու համար Սողոմոն Թէհլիրեանի յիշատակը: Անշուշտ կան տակաւին ընտանիքներ որոնք մեր յիշողութենէն վրիպած ըլլալով չեն արձանագրուած մայր տոմարին մէջ, բայց եւ այնպէս սիրով կ՚ընդունինք իրենց նուէրները որեւէ առիթով :

Նուիրատուներու ցանկը մաս առ մաս յետագային :

Փարիզի Հայ Մշակոյթի Տան՝ «Սողոմոն Թէհլիրեան» սրահին Օժանդակ մարմին, քարտուղար Պ. ՊԵՏՐՈՍԵԱՆ :

Նախագահ՝ ՅԱՐ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

ԱԼՖՈՐՎԻԼ, 16 Յունուար 1961

×

Կապ. Խաչի Կրենոպլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Միքայէլեանէ քառասուն Ն. Ֆ. ի նպաստ իր դպրոցին՝ իրենց զաւկին Ալժերիայէն ողջ առողջ վերադառնալուն ուրախ առթիւ:

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օժանդակ փոխութեան կայանին կը նուիրեն .—

Պ. Պ. Կ. Ճրնկըրըրեան 250 Ն. Ֆ., Ալեանաքեան 150, Տիկին Մուրատեան հարիւր, Պ. Ն. Հայթայեան յիսուն, Տիկ. Վ. Նուպար երեսուն, Օր. Տ. Անդրանիկեան քսան, Պ. Մենծիկեան (Մարսէյլ), Տիկին Եարմաեան, Պ. Պ. Գրիգորեան, Պայտարեան, Հարբութլեան, Լեւոն Դերձակեան, Տէր եւ Տիկին Զաքարեան, Պ.Պ. Վահան Քէշիշեան (Իսի լէ Մուլինօ), Գ. Ճըրճըրեան, Քէլէսեան, Ակոնայեան, Գարէն Հաստատութիւն, Պ.Մալեան 10ական Ն. Ֆ., Պ. Քոչեան ութ Ն. Ֆ., Պ. Գրիգոր Օզլնեան (Իսի լէ Մուլինօ) 10 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Տօղրամաճեան (Լիվրի Կարկան) 10, Տիկին Արմինէ Կօճիկեան (Իսի լէ Մուլինօ) 10 Ն. Ֆ.:

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ գումարները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան .—

Հանգուցեալ Մարիցա Օպողեանի մահուան առթիւ Վիէնէն Տիկին Եղիսաբէթ Ալյանեան փոխան ծաղկեպսակի կը նուիրէ տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Վարոս Գայթանճեան իրենց սիրեցեալ բարեկամին Պ. Անդրանիկ Օպողեանի մօր մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն յիսուն Ն. Ֆ.: Նոյն առթիւ Պ. Արսէն Թէրզեանէ քսան Ն. Ֆ.:

Հանգուցեալ Պօղոս Թաղէոսեանի մահուան քառասունքին առթիւ հետեւեալ գումարները նուիրուած են .— Տէր եւ Տիկին Հրանտ Թաղէոսեանէ յիսուն Ն.Ֆ., Պ. Պ. Մանուկ Պէրպէրեանէ քսան, Խաչիկ Պետրոսեանէ տասը, Տէր եւ Տիկին Միքայէլ Տէր Յակոբեանէ երեսուն, Պ. Ալեքսան Ալեքսանեան շինութեան կը նուիրէ քսան, Ոմն քսան Ն. Ֆ. :

×

Լիոնի Ազգ. Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները. — Հանգուցեալ Պօղոս Թաղէոսեանի մահուան քառասունքին առթիւ.— Տէր եւ Տիկին Հրանդ Թաղէոսեանէ քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Միքայէլ Տէր Յակոբեանէ քսան Ն.Ֆ.:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը տեղի կ՚ունենայ այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը :

Պիտի խօսի Պուքրէշի Թեմական երկարամեայ պատգամաւոր՝

ԲԺԻՇԿ ՎԱՀԷ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Նիւթն է՝ «Ռումանիոյ գաղութին այժմու վիճակը »:



## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Ռեժան: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը անհրաժեշտ է :

## 3Ը-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, 5 Մարտ, 1961, կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սալ տը լա Շիմի:

28պիս, Րիւ Սէն Տոմինիք :

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Տէր եւ Տիկին Աւետիս Եագուպեանէ 20 Ն. Ֆ.։*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղը ցաւակցութիւն կը յայտնէ Տիկին Ովաննա Խօքսիւզեանի եւ ընտանեկան պարագաներուն իրենց սիրեցեալ մօր եւ ազգականին մահուան առթիւ։*

×

*Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղը հիւանդանոց այցելութեան առթիւ շնորհակալութեամբ ստացած է 10 Ն. Ֆ. Պ. Ա. Գալիկեանէ։*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, փոխան ծաղկեպսակի։— Ողբ. Գրիգոր Կէչուտեանի յուղարկաւորութեան առիթով՝ Պ. Քրիչա Յարութիւնեանէ տասը Ն. Ֆ., (10 ալ Աղքատախնամին), Պ. Պ. Արմենակ Թորոսեանէ, Ֆրանսուա Պարտիւչէնէ 10ական, Պօղոս Օհանեանէ 15 (Աղքատախնամին)։ Իսկ Ողբացեալ Վահան Համբարձումեանի յուղարկաւորութեան առիթով Պ. Պ. Զ. Համբարձումեանէ 10, Խաչատուր Զաքօեանէ հինգ (10 ալ Փարիզի Սողոմոն Թէհլիրեան սրահին)։ Աւանդ գումարները ստանալ եկեղեցիէն։*

## ՏՕՆԱԾԱՌ ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին տարեկան տօնածառը, այս կիրակի,* Սեբֆլը Կաթոլիքի *սրահը, ժամը 15ին։*

*Գեղարուեստական ճոխ բաժին։*

*Մանուկներու կողմէ.— Երգ, արտասանութիւն, հայկական եւ եւրոպական պարեր, ղեկավարութեամբ* Օր. Աճպըջրճեանի։ *Կաղանդ Պապան իր նուէրներով։*

*Կը հրաւիրուին մանուկները, ծնողքները, երիտասարդները։*

Մուտքը ազատ է։



### ԾԱԽՈՒ Է ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Մեկնումի պատճառով ծախու է նպարավաճառի խանութ մը, ապրանքով կամ առանց ապրանքի, որ ունի խոհանոց մը եւ հինգ սենեակնոց յարկաբաժին մը վրան։ Վարը՝ երկու մթերանոց եւ մէկ կառատուն։ Գրել Յառաջին որ կը փոխանցէ կամ հեռաձայնել՝*

49.51-58 A Décines (Isère).

Օր. ԱՆԱՀԻՏ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ
Պ. ՆԵՐՍԷՍ ՍԱՐԱՖԵԱՆ
Ամուսնացած

*Փարիզ* *Հալէպ*

*Ամուսնութիւնը կատարուեցաւ 1961, Յունուար 12ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, կնքահայրութեամբ* Բժ. Կարօ Մանկեանի, *ընտանեկան սեղմ շրջանակի մէջ։*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանին յաջորդ հաւաքոյթը տեղի կ'ունենայ այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը։*

*Պիտի խօսի Պուքրէշի թեմական երկարամեայ պատգամաւոր՝*

**ԲԺԻՇԿ ՎԱՀԷ ԳՐԻԳՈՐԵԱՆ**

*Նիւթն է՝* «Ռումանիոյ գաղութին այժմու վիճակը»։



*Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական ցերեկոյթը՝ Մարտ 26ին։*

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Ռեժան։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը անհրաժեշտ է։*

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 20.30ին, Օհանջանեան սրահը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Շատ կարեւոր օրակարգ.— պատգամաւորի զեկուցում։*

*ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան դպրոցը։ Կարեւոր օրակարգ։ Զեկուցում Շրջ. ժողովի։*

## ՆՈՒԷՐ

*Օր. Արմենուհի 10 Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին, իր սիրելի ծնողքին յիշատակին։*





## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղին
կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**

**43, Bd. Raspail**

*ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՅԱՋՈՐԴՈՎ*

Այրի Տիկին Հռաչեայ Տէր - Ներսէս - եան, ընտանիքը եւ բարեկամները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, ազգականին եւ բարեկամին՝

ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐ - ՆԵՐՍԷՍԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 22ին, 79 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Հինգշաբթի, ժամը 16·15ին, Փարիզի Ս· Յովհաննէս - Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի, ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՏՕՆԱԾԱՌ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին տարեկան տօնածառը, այս Կիրակի, Սերֆըլը Կաթոլիքի սրահը, ժամը 15ին:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանուկներու կողմէ.— Երգ, արտասանութիւն, հայկական եւ եւրոպական պարեր, ղեկավարութեամբ Օր· Աֆպը - յըքեանի: Կաղանդ Պապան իր նուէրներով:

Կը հրաւիրուին մանուկները, ծնողքները, երիտասարդները:

Մուտքը ազատ է:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը տեղի կ'ունենայ այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը:

Պիտի խօսի Պուքրէշի Թեմական երկարամեայ պատգամաւոր՝

ԲԺԻՇԿ ՎԱՀԷ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Նիւթն է՝ «Ռումանիոյ գաղութին այժմու վիճակը»:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տիկին Վարդուհի Շիրինեան Փարիզի Ս· Յովհ· Մկրտիչ եկեղեցւոյն կը նուիրէ 20 Ն· Ֆ·, իր եղբօր Պ· Ներսէս Տակառեանի ապաքինման առթիւ:

×

Ինչպէս անցեալ տարի, այս անգամ ալ, Ազգային մեծ բարերար ողբ· Գալուստ Կիւլպէնկեանի հիմնարկութիւնը, Հայ - բողոքական պատուիրակ Գերաշնորհ Սերովբէ Եպիսկ· Մանուկեանի տրամադրութեան տակ դրած է 6370 Ն·Ֆ·ի գումարը, բաժնուելու համար, 1960 - 1961 տարեշրջանի, Ֆրանսայի հայկական բոլոր դասընթացքներուն: Դիւան

×

Լիոնի Ազգ· Միութիւնս շնորհակալութեամբ ստացած է ներկայիս Փարիզաբնակ Տիկին Հայկանուշ Ոսկերիչեանէ, ձեռամբ Պ· Յակոբ Ոսկերիչեանի հինգ հարիւր Ն· Ֆ·, ի նպաստ Նորակառոյց եկեղեցւոյ բարեզարդութեան: Յիշեալ բարեսէր տիկինը չի մոռնար երբեք իր նախկին բնակավայրը, Լիոն, եւ ըստ իր բարի եւ ազնիւ սովորութեան ամէն տարի կը ղրկէ որոշ գումար մը, Լիոնի Հայաստանեայց Առաքելական Ս· Եկեղեցւոյն:

ԿԱՐԴԱՑԷ՛Ք

«ԿԱՊՈՅՏ ՕԹԵԱԿ»Ը

Խորհրդաւոր մասոնական աշակերտ, ընկեր եւ վարպետի ծէսերուն արարողութիւնները ու ճշգրիտ սկզբունքները: Պատրաստուած Սկովտիոյ Էտինպուրկի բարձր օթեակէն վկայուած Հ· Մ· Համբարձումեանի կողմէ:

5 Ն· Ֆ·, կը ծախուի հետեւեալ հասցէներուն.— Հեղինակին.—

14, Rue Albert Sarraut, Goussainville

Librairie H. SAMUEL, 51 Rue Monsieur-le-Prince, Paris

» PALOUYAN, 43. Rue Richer »

» BARSAMIAN, 46, Rue Richer »

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ-ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ· Յ· Դ· Նոր Սեբաստիոյ «Վարդգէս» խումբի կողմէ:

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն մինչեւ առաւօտ, Սալ տէ Ֆէթի մէջ:

Մասնակցութեամբ՝

ANDRÉ FRANÇOIS

նուագախումբի

Ջութակի վրայ կը նուագէ՝

ՍԷԹՕ ՔՈՒԼԱԿՍԸԶԵԱՆ

(Փարիզի պետական երաժշտանոցէն)

Կը հրաւիրուին Կեդր· Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:

Մուտք 5 Ն· Ֆ·

Սրահի ջերմութիւնն ապահովուած է:

## Կ'ՈՒԶՈՒԻ

LIVREUR

մը, երիտասարդ եւ աշխոյժ, զինուորական պարտականութենէ ազատուած:

Դիմել.—

17 bis, Rue René Anjolvy, Gentilly

ALE. 24-65

## ԾԱԽՈՒ Է

## ԼԻՈՆԻ ԿԵԴՐՈՆԸ

Նպարավաճառի եւ մսավաճառի խանութ մը ծախու է կամ վարձու, յարմար պայմաններով:

Դիմել՝

BAHADOURIAN

246, Rue Vendôme, Lyon

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԻԷՆ.— Հ· Յ· Դ· Անի կոմիտէի ընկերական ընդհ· ժողովը այս Շաբաթ ժամը 20·30ին, Օհանջանեան սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Շատ կարեւոր օրակարգ.— պատգամաւորի զեկուցում:

ԻՍԻ.— Հ· Յ· Դ· Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան ղպրոցը: Կարեւոր օրակարգ: Զեկուցում Շրջ· ժողովի:

ՓԱՐԻԶ.— Հ· Յ· Դ· Աղբիւր - Սերոբ եւ Մ· Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ· ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Արեւաշատ Կիւղէլ Ասլանեան կը փնտռէ իր հօրեղբայրը Պ· Սիմոնս Սարգիս Ասլանեանը, որ Փարիզ կամ շրջակայքը կը բնակի եւ որմէ մինչեւ 1948 նամակ կը ստանային Հայաստանի իր պարագաները: Արհեստով դեղավաճառ, այլ անունով Սիմոնս Սարգիսեան ալ կը կոչուի, ունի երկու մանչեր Ռուբէն եւ Արմենակ: Ծինք ճանչցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս· Յովհ· Մկրտիչ Եկեղեցւոյ դիւանը, 15 Ռիւ Ժան Կուժօն Փարիզ (8):

ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ· ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Փետրուար 19

**HOTEL GEORGE V**

ժամը 17էն մինչեւ կէս գիշեր, Պարի երկու նուագախումբ, խնամուած պիւֆէ, սովորական գիներով

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները դիմելով՝

U.G.A.B. 11, Square Alboni, Paris (16e). Tél. TRO. 03-18, C.C.P. Paris 8019-72

Մուտքի տոմս, 7·50 Ն· Ֆ·

ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ ՄՈՒՏՔ եւ ՍԵՂԱՆ ԿԷՍ ԳԻՆ

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 12, Կիրակի ժամը 16 - 24

**LES AMBASSADEURS**

**3, Avenue Gabriel - Champs-Élysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLEANS

PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին Մուտք 5 Ն· Ֆ·

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ 67 - 03

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19·30ին: Հակառակ պարագային պարահանդէսի կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ:

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ

ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՋՈՒԱ՛ՐԹ

Մայրամուտէն մինչեւ կէս գիշեր

ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆՈՒԱՐ 29, ԺԱՄԸ 17էն 24

**AMBASSADEURS**

3, Ave. Gabriel, 3

ԵՐԳ ՈՒ ՊԱՐ

ՄԵԾ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Attractions** ԽԱՂԵՐ **Bar-Buffet**

ՏԱՐԻ ՆՈՐ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՓԱՌՔ ՆՈՐ

ԶՆԱԳՈՅՆ ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԻ ԳՈՀԱՐ ՄԱՆՐԱՆԿԱՐՆԵՐՈՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ

— (1960 —

... «Մեծ ժողովուրդները իրենց մնայուն պատմութիւնը միայն սուրով, հուրով եւ արիւնով չեն գրեր, այլ եւ գրիչով, վրձինով եւ արուեստով՝ իրենց մշակոյթով: Անոնցմէ է հայ ժողովուրդը»:

ՀԱՅԱՍՏԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՈՒԱԾ՝ ՓԱՐԻԶ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ

Անթիպ եւ գունաւոր նկարներով

ՖՐԱՆՍԱԿԱՆ ՇՔԵՂ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ

Մեծադիր փառաւոր հատոր մը, 200 էջ, 100 արտատպում:

ԳԻՆ 120 Ն· Ֆ·

Դ Ի Մ Ե Լ

ՅԱՌԱՋ

32, Rue de Trévise, 32

**PARIS (IXe)**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Գրիգոր Այանեան, զաւակները եւ բոլոր ազգականները կը ծանուցանեն թէ այս Կիրակի, առաւօտեան ժամը 9·30ին, քաղաքիս Փրանսական մատուռին մէջ Շափէլ տը լ'Օթէլ տը Վիլ, պատարագէն ետք հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի իրենց ողբացեալ կնոջ, մօր եւ ազգականին՝

ՄԱՐԻԱՄ ԱՅԱՆԵԱՆԻ
(Ծնեալ Խանզատայեան)

մահուան քառասունքին առթիւ:

×

Այրի Տիկին Պաղտասարեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց զաւկին եւ եղբօր՝

ՄԻՇԷԼ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ (ինկած Ալժերիոյ ճակատը):

Այս Կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցիին մէջ:

Կը հրաւիրուին տարաբախտ երիտասարդին յիշատակը յարգողները:

×

Տիկին Հաճի Բերրոն Տէյիրմէնճեան (Կարնեցի) հոգեհանգստեան պաշտօն կատարել կուտայ ի յիշատակ Զօր. ԱՆԴՐԱՆԻԿԻ, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ-ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ «Վարդգէս» խումբի կողմէ:

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն մինչեւ առաւօտ, Սալ տէ Ֆէթի մէջ:

Մասնակցութեամբ՝

ANDRÉ FRANÇOIS

նուագախումբի

Ջութակի վրայ կը նուագէ՝

ՍԷԹՕ ՔՈՒԼԱԿՍԸԶԵԱՆ

(Փարիզի պետական երաժշտանոցէն)

Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:

Մուտք 5 Ն. Ֆ.

Սրահի ջերմութիւնն ապահովուած է:

## ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՀՐԱՒԷՐ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Փարիզի Հայ Աղք. Ընկերակցութիւնը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամները 26 Յունուար, Հինգշաբթի ժամը 18ին, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ:

ՕՐԱԿԱՐԳ.— Սէն Ռաֆայէլի ծերանոցին (Հոմ Արմէնիէն) շուրջ մեր Ընկերակցութեան եւ հետեւեալ մարմիններու հետ գոյացած համաձայնութիւններուն տեղեկատուութիւն եւ վաւերացում.—

Ա) Միացեալ Ազգերու Կազմակերպութեան Տարագիրներու տնօրէնութիւն:

Բ) Օտար տարագիրներու տեղաւորման ընկերակցութիւն:

Գ) Գաղթականներու Ընկերային Օգնութեան Կազմակերպութիւն:

Դ) Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութիւն:

Օրակարգի կարեւորութեան պատճառաւ կը յանձնարարուի ստիպողական ներկայութիւն:

Դիւան վարչութեան
(ԿՆԻՔ)

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, 5 Մարտ, 1961, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի:

28պիս, Րիւ Սէն Տոմինիք:

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը:

## ՏՕՆԱԾԱՌ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին տարեկան տօնածառը, այս Կիրակի, Սերքլը Կաթոլիքի սրահը, ժամը 15ին:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանուկներու կողմէ.— Երգ, արտասանութիւն, հայկական եւ եւրոպական պարեր, ղեկավարութեամբ Օր. Աֆպըյըքեանի: Կաղանդ Պապան իր նուէրներով:

Կը հրաւիրուին մանուկները, ծնողքները, երիտասարդները:

Մուտքը ազատ է:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 20·30ին, Օհանջանեան սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Շատ կարեւոր օրակարգ.— պատգամաւորի ընտրութիւն (?):

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Զեկուցում Շրջ. ժողովի:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր – Սերոբ եւ Մ. Նօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

## Կ'ՈՒԶՈՒԻ

LIVREUR

մը, երիտասարդ եւ աշխոյժ, զինուորական պարտականութենէ ազատուած:

Դիմել.—

17 bis, Rue René Anjolvy, Gentilly
ALE. 24-65

Պ. Խտուար Փափազեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Սուրէն Մ. Ճերմակեան եւ զաւակները եւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ մօրաքրոջ՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՊՕՂՈՍ ՓԱՓԱԶԵԱՆԻ
(Ծնեալ Տիրոնեան)

մահը որ տեղի ունեցաւ Յունուար 25ին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսՇաբաթ առաւօտ ժամը 10.45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

181, Rue Legendre, Paris (17e)
8, Rue d'Alsace, Asnières (Seine)

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Տէր եւ Տիկին Սուրէն Ճերմակեանի եւ ընտանիքին:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Աղապէկեան ընտանիքը, կը նուիրէ 150 Ն. Ֆ., ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օղափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Տիկին Սաթենիկ Խաչատուրեանի մահուան առթիւ:

Տէր եւ Տիկին Մեծպահքեան (Պուա Քոլոմպ) կը նուիրեն քսան Ն. Ֆ., ի նպաստ Հայ Կարմիր Խաչի անտէր հիւանդներու ֆոնտին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Գրիգոր Պարոնվարդեանի մահուան առթիւ:

Պ. Կարապետ Գարաճեան (Իսի լէ Մուլինօ) կը նուիրէ երեսուն Ն.Ֆ., ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Փարիզի դարմանատան, իր կնոջ ապաքինման առթիւ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Պաղտասարեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց զաւկին եւ եղբօր՝

ՄԻՇԷԼ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ (ինկած Ալժերիոյ ճակատը):

Այս Կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցիին մէջ:

Կը հրաւիրուին տարաբախտ երիտասարդին յիշատակը յարգողները:

×

Այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս.Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի

ԲԱԳՐԱՏԻԴԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 12ԻՆ
ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ







Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՏՕՆԱԾԱՌ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին տարեկան տօնածառը, այս Կիրակի, Սերքլը Կաթոլիքի սրահը, ժամը 15ին:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանուկներու կողմէ.— Երգ, արտասանութիւն, հայկական եւ եւրոպական պարեր, ղեկավարութեամբ Օր. Աֆպըյըքեանի: Կաղանդ Պապան իր նուէրներով:

Կը հրաւիրուին մանուկները, ծնողքները, երիտասարդները:

Մուտքը ազատ է:

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

ՊԱՏՄԱԳԻՐՔ

## ԱՏԱՓԱԶԱՐ «ԱՍՏՈՒԱԾԱՐԵԱԼ» ՔԱՂԱՔԻՆ

Խմբագրեցին՝ Ա. Պիպէռեան եւ Վ. Եդիշէեան:

Հայաշունչ քաղաքի մը հետաքրքրաշարժ պատմութիւնը:

750 էջ, պատկերազարդ, մաքուր տպագրութիւն:

Գին 20 Ն. Ֆ. (կամ 4 տոլար)

Ստանալու համար դիմել՝

Հ. Ակոնայեան՝
32, Rue de la Paix à Antony (Seine)
Հ. Հոգտանեան՝
15, Rue Gérando, Paris 9e
Տ. Փափազեան՝
86, Rue d'Aubagne, Marseille.





## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ-ՇԱՄՈՆի ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբի կողմէ:

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն մինչեւ առաւօտ, Սալ տէ Ֆէթի մէջ:

Մասնակցութեամբ՝

ANDRÉ FRANÇOIS
նուագախումբի

Ջութակի վրայ կը նուագէ՝
ՍԷԹՕ ՔՈՒԼԱԿՍԸԶԵԱՆ
(Փարիզի պետական երաժշտանոցէն)

Կը հրաւիրուին կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:

Մուտք 5 Ն. Ֆ.

Սրահի ջերմութիւնն ապահովուած է:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական ցերեկոյթը՝ Մարտ 26ին:



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 20.30ին, Օհանջանեան սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Շատ կարեւոր օրակարգ.— պատգամաւորի զեկուցում:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Ջաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան դպրոցը: Կարեւոր օրակարգ: Զեկուցում Շրջ. ժողովի:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ազբիւր-Սերոբ եւ Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5

Կէսօրէ ետք ժամը 3.30ին

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԶՈՒԱՐԹ
Մայրամուտէն մինչեւ կէս գիշեր
ԶՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ
ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆՈՒԱՐ 29, ԺԱՄԸ 17էն 24

AMBASSADEURS
3, Ave. Gabriel, 3

ԵՐԳ ՈՒ ՊԱՐ
ՄԵԾ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Attractions** ԽԱՂԵՐ **Bar-Buffet**

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պ. Ժագ Փափազեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր ծնողքին Տէր եւ Տիկին Կիրակոս Փափազեանի, Լիոն :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է, Լիոն ղրկուած նուիրատուներէ, Տիկին Թագուհի Բագումեանի միջոցաւ, հետեւեալ գումարները .—

Պ. Պ. Ր. Աւետիսեան հարիւր Ն. Ֆ., Կատայեան, Քէօլոյեան, Ներսէսեան, Թովմասեան, Տիկին Փափազեան 50ական Ն. Ֆ.: Պ. Պ. Մարկոսեան, Տ. Փափազեան, երեսունական, Ա. Աւագեան, Ք. Դաւիթեան քսանական, Ա. Թաթոսեան, Յով. Միքայէլեան, Մեսրոբեան, Պ. Պետիճեան, Պահատուրեան, Բաքսեղեան, Պալեօզեան, Ալթունեան տասնական Ն. Ֆ.: Գումար 530 Ն. Ֆ.:

×

Սէն Ժերոյի Թաղ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նըւէրները ողբացեալ Յովսէփ Մխճեանի մահուան առթիւ:

Պ. Պ. Վազգէն Նահապետեանէ 10 Ն. Ֆ., Ծերոն Մելիմէճեանէ հինգ Ն. Ֆ., Թաղիս եկեղեցւոյ: Սարգիս Ահարոնեանէ, Պօղոս Պարսամեանէ, Յարութիւն Խաչատուրեանէ տասնական Ն. Ֆ., իսկ Ծերոն Մելիմէճեանէ հինգ, Կարապետ Ճանիկեանէ հինգ Ն. Ֆ., Թաղիս դպրոցին: Շնորհակալութեամբ ստացուած է նաեւ Պ. Պարսամ Պարսամեանէ Ս. Ծնունդի առթիւ եկեղեցւոյս պայծառութեան համար տասը Ն. Ֆ.:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Պալտասարեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց զաւկին եւ եղբօր՝

ՄԻՇԷԼ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ (ինկած Ալժերիոյ ճակատը):

Այս կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցիին մէջ:

Կը հրաւիրուին տարաբախտ երիտասարդին յիշատակը յարգողները:

## ԾԱԽՈՒ Է

Վիրոֆլէի մէջ, էնվալիտէն – Վէրսայլ շոգեկառքի գծին վրայ, Շաւիլ – Վէլիզի կայարանին ճիշդ դիմացը, յարկաբաժին մը՝ երեք սենեակ, խոհանոց, բաղնիք, կեդրոնական ջեռուցում, երրորդ յարկ, շատ լաւ վիճակի մէջ: Հեռաձայնել 926 57 – 84, ճաշի ժամերուն:

## ԾԱԽՈՒ Է
## ԼԻՈՆԻ ԿԵԴՐՈՆԸ

Նպարավաճառի եւ մսավաճառի խանութ մը ծախու է կամ վարձու, յարմար պայմաններով:

Դիմել՝

BAHADOURIAN
246, Rue Vendôme, Lyon

## ՏՕՆԱԾԱՌ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին տարեկան տօնածառը, այս կիրակի, Սերֆլը Կաթոլիքի սրահը, ժամը 15ին:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանուկներու կողմէ.— Երգ, արտասանութիւն, հայկական եւ եւրոպական պարեր, ղեկավարութեամբ Օր. Աճպըյըճեանի: Կաղանդ Պապան իր նուէրներով:

Կը հրաւիրուին մանուկները, ծնողքները, երիտասարդները:

Մուտքը ազատ է:

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կ՚առաջնորդուի պետական ուսումնական ծըրագրով: Եթէ ցարդ չէ կրցած բանալ Լիսէի բարձրագոյն կարգի դասարանները պատճառն այն է որ ցարդ չէ ունեցած բաւականաչափ ուսանողուհիներ այդ դասարաններուն համար:

Վարչութիւնը որոշած է ամէն ջանք ի գործ դնել որպէսզի ամբողջապէս իրագործուի լիսէի ծրագիրը իր վարժարանին մէջ, ուսուցչական համապատասխան կազմով:

Հետեւաբար կոչ կ՚ընէ բոլոր այն ծընողքներուն, որոնք կը փափաքին իրենց աղջիկները ղրկել լիսէի երկրորդ դասարանը (Սէքսիոն Մոտէռն) այժմէն իսկ դիմեն վարժարանի տնօրէնութեան արձանագրելու 1961 – 1962 տարեշրջանին համար:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Այրի Տիկին Ս. Խաչատուրեանի մահուան առթիւ Պ. Պերճ Զաքրճեան կը նըւիրէ հարիւր Ն. Ֆ., Փարիզի Աղքատախնամին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ԵՐԵՒԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐԸ

Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները Փարիզի ժամով ժամը 9էն մինչեւ 9·30 կարճ ալիք 25 եւ 30 մեթր:



## ՍՏԻՊՈՂԱԲԱՐ Կ՚ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի կին մը (60էն վար) նորածինով մը զբաղելու համար: Տեղոյն վրայ բնակութեան կարելիութիւնով: Դիմել.—



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ-ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբի կողմէ:

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 21էն մինչեւ առաւօտ, Սալ տէ Ֆէթի մէջ:

Մասնակցութեամբ՝

ANDRÉ FRANÇOIS
նուագախումբի

Ջութակի վրայ կը նուագէ՝

ՍԷԹՕ ՔՈՒԼԱԿՍԸԶԵԱՆ

(Փարիզի պետական երաժշտանոցէն)

Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:

Մուտք 5 Ն. Ֆ.

Սրահի ջերմութիւնն ապահովուած է:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական ցերեկոյթը՝ Մարտ 26ին:

## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 20·30ին, Օհանջանեան սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Շատ կարեւոր օրակարգ.— պատգամաւորի զեկուցում:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան դպրոցը: Կարեւոր օրակարգ: Զեկուցում Շրջ. ժողովի:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր – Սերոբ եւ Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը՝ այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաւէի վերնայարկը :

Կը խօսի գրագէտ ԶԱՐԵՀ ՈՐԲՈՒՆԻ :

Նիւթն է՝ «Գիտակցութեան Ծնունդը» :

## ՍՏԻՊՈՂԱԲԱՐ Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի կին մը (60էն վար) նորածինով մը զբաղելու համար : Տեղոյն վրայ բնակութեան կարելիութիւնով : Դիմել.—



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պաննէօ – Քաշանի «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Հինգշաբթի, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ողբ. Տիկին Օտէթ Փափազեանի մահուան առթիւ Մարսէյլի Աղքատախնամին կը նուիրեն Րիւ Թէրիի հայ կօշկակարները ու արհեստակիցները հարիւր Ն. Ֆ., Պ. Միշէլ Ասլանեան նոյնպէս Աղքատախնամին 10 Ն. Ֆ., գումար 110 Ն. Ֆ. :

---

ՎԱՐԴԱՆԱՆՑԻ 1500ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

Ի նպաստ Առնուվիլի եկեղեցիին

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԱՌՎԱՐԵՆՑ ԽՈՒՄԲԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# ՎԱՐԴԱՆԱՆՑԸ

(5 արար – 4 պատկեր)

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

եւ հովանաւորութեամբ

*ԱՌՆՈՒՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ*

Կիրակի, Փետրուար 26, ժամը 15ին

**SALLE DE LA CHIMIE**

28 BIS, RUE ST. DOMINIQUE MÉTRO : INVALIDES

Կը մասնակցի Սիփան – Կոմիտաս երգչախումբը ղեկավարութեամբ՝

*ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ*

---

ՏԱՐԻ ՆՈՐ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՓԱՌՔ ՆՈՐ

ԶՆԱԳՈՅՆ ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԻ ԳՈՀԱՐ ՄԱՆՐԱՆԿԱՐՆԵՐՈՒՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ

— 1960 —

... « Մեծ ժողովուրդները իրենց մնայուն պատմութիւնը միայն սուրով, հուրով եւ արիւնով չեն գրեր, այլ եւ գրիչով, վրձինով եւ արուեստով՝ իրենց մշակոյթով : Անոնցմէ է հայ ժողովուրդը » :

*ՀԱՅԱՍՏԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՈՒԱԾ՝ ՓԱՐԻԶ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ*

Անթիպ եւ գունաւոր նկարներով

*ՖՐԱՆՍԱԿԱՆ ՇՔԵՂ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ*

Մեծադիր փառաւոր հատոր մը, 200 էջ, 100 արտատպում :

Գին 120 Ն. Ֆ.

*ԴԻՄԵԼ*

ՅԱՌԱՋ

32, Rue de Trévise, 32

**PARIS (IX°)**

---

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղին

Կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**

**43, Bd. Raspail**

*ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՅԱՋՈՐԴՈՎ*

---



---

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 12, Կիրակի ժամը 16 – 24

**LES AMBASSADEURS**

**3, Avenue Gabriel - Champs-Élysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLEANS

PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին

Մուտք 5 Ն. Ֆ.

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին էլիզէ 67 – 03

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19·30ին : Հակառակ պարագային պարահանդէսի կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :

---

**ORCHESTRE SYMPHONIQUE**

**DES CONCERTS CHOUTEAU**

(60 musiciens)

1961, եղանակի առաջին նուագահանդէսը

*Ղեկավարութեամբ*

ԱՐԱ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

Երկուշաբթի, 30 Յունուար, ժամը 21ին,

**SALLE GAVEAU**

Մասնակցութեամբ անուանի դաշնակահար

PIERRE ROUÈCHE-ի

Յայտագրին մէջ դասական եւ հայկական երաժշտութիւն

Մուտք 2·50էն 12 Ն. Ֆ.

Տոմսերու համար դիմել գրասենեակ Հ. Բալուեանի կամ Ա. Պարթեւեանի,

14, Rue Petit Tél. : BOT. 99-22

---

